# Բ Ա Ռ Գ Ի Ր Ք

## ՅԱՇԽԱՐՀԱԲԱՌԷ Ի ԳՐԱԲԱՌ

# ԲԱՌԳԻՐՔ

# ՅԱՇԽԱՐՀԱԲԱՌԷ Ի ԳՐԱԲԱՌ

ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ ՈՃՈՅ ԵՒ ԴԱՐՁՈՒԱԾՈՎՔ ՆԱԽՆԵԱՑ

Ի ՊԷՏՍ ԴՊՐՈՑԱՑ



*ՎԵՆԵՏԻԿ*

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1869

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ով որ իր ազգային լեզուն չսիրեր, իր հայրենիքը չսիրեր. վասն զի այն լեզուն՝ որով իր Հարքը իրենց մտքին իմաստները ու իրենց սրտին զգացմունքը բացատրեր են, պէտք է որ իրեն համար սրբազան բան մը ըլլայ. վասն զի վերջապէս անոնց լեզուն է, որոնք իրենց առաքինութեամբը ազգին հայր եղած են, ու իր ազգութիւնը պահեր ու իրեն աւանդեր են։

Աս ճշմարտութենէն կը հետեւի որ պարտական ենք մեր լեզուն պահելու, ու պահելու համար պէտք եղած հնարքներն ու գործիքներն ալ բանեցընելու։ Աս գործիքներէն առջի հարկաւորը աշխարհաբառէ 'ի գրաբառ բառգիրքը ըլլալուն վրայ չիտարակուսուիր։ Բայց ինչուան հիմայ ձեռուընիս եղած բառարանին ալ՝ թէ՛ դրական և թէ՛ բացասական թերութիւնները՝ ամենուն յայտնի են։ Ասով չենք ուզեր մեր նախնեացը ապերախտ ըլլալ, անոնց արդիւնքը չիճանչնալով. վասն զի մէկ պակասաւոր սկզբնաւորութիւն մը շատ աւելի դժուարին է, քան թէ անոր ետեւէն եղած կատարելագործութիւնները։ Ու թէ որ աս խօսքս ամեն գիտութեանց վրայ ալ կը ճշմարտի, և աս առաւել բառարանի մը վրայ, որուն առջի հեղինակին արդիւնքը միշտ կը ճանչցուի, որչափ ալ անոր կատարելագործողներուն արդիւնքը մեծ ըլլայ։

Ուրեմն ինչպէս ինչուան հիմայ եղած բառարանին թերութիւնները յայտնի էին, ասանկ ալ յայտնի էր հարկաւորութիւնը աս թերութիւնները ըստ կարելւոյն քիչցընելու։ Ըստ այսմ մեր առջի հոգը եղաւ՝ դուրս ձգել այն ամեն գրաբառ ոճերն ու բառերը, որ նախնեաց հեղինակութիւնը չունին. ուստի կրնանք վստահաբար ըսել՝ որ զուտ հայկական ու նախնեաց բառեր են դրածնիս. բաց անոնցմէ որ յատուկ բառ չունենալնուս՝ տեղ տեղ հարկ եղեր է նախնեաց հետեւողութեամբ ձեւացընել կամ գաւառական բառ մը գործածել։

Մեր երկրորդ հոգը եղաւ՝ ճշդել բառերուն նշանակութիւնը, ու աշխարհաբառին դիմացը՝ իր բուն յատուկ բացատրող բառերն ու բայերը դնել, չէ թէ անոնց հեռուանց իրարու հետ մերձաւորութիւն մը ունենալնուն համար՝ մէկտեղ խառնել, ու շփոթել ուսանողաց միտքը, ու լեզուներնուս ճշդութիւնը կորսնցընել՝ տարտամ ընելով իր բացատրութիւնները։ Թող ուսանողք աս ճշդութեանը վարժելէն ետքը, ինքիրենուն գործածեն ըստ տեղւոյն ատ այլաբանաբար կամ բանաստեղծաբար նշանակութեանց առումները։

Մեր երրորդ ու մեծագոյն հոգը եղաւ՝ ճոխացընել աս բառարանը մեր լեզուին բառերովն ու ոճերովը. չէ թէ սոսկ անսովոր ու խրթին բառերն ու ոճերը կիմանանք, որոնք, բանեցընելու համար մեծ վարժութիւն կը պահանջուի. ու աս վարժութիւնը չեն կրնար ունենալ նորավարժ ուսանողք, որոնց պիտոր ծառայէ գլխաւորապէս աս բառարանը. այլ կիմանանք այն սովորական բառերն ու ոճերը, որոնց վրայ է մեր լեզուին գլխաւոր գեղեցկութիւնը, ու անոնցմով կը պահուի նախնեաց ընտիր շարադրութեան համար տուած սահմանը՝ «Որ'ի քերթողաց և 'ի շարագրաց բազում անգամ ասացելոց։» Որով ըսել կուզենք որ հեղինակաց ամեն բանեցուցածը ամեն տեղ պէտք չէ գործածել, այլ ո՛ր բառերն ու ոճերը ստէպ որ բանեցուցեր են։

Բաղձալի էր մեզի մաքրել աս բառարանը նաև շատ մը տաճկերէն խորթ բառերէն, որոնք հարկ եղած է գործածելու, որպէս զի ուսանողք անոնցմով կարենան գրաբառ բառերն ու բայերը գտնել։ Աս հարկը որչափ ալ մեր պոլսեցի ու հնդկաստանցի ազգայնոց համար պակսած ըլլայ, բայց ուրիշ շատ կողմերու ազգայնոց համար դեռ կը տևէ։ Մանաւանդ թէ շատ բառերու մէջ մեր պոլսեցի ազգայնոց համար ալ դեռ աս հարկը կը ստիպէ զմեզ։

Օրինակի համար՝ թէ որ տաճկերէն տաւռայ բառը դնելու չըլլայինք, ասոր հայերէնը ինչպէս կրնային գտնել ուսանողք. թէ որ խզըլձըխ, մուշմուշլա, իյտէ ու ասոնց նման տաճկերէն բառերը վերցընելու որ ըլլայինք, քանի՞ հոգի անոնց հայերէնը կրնար գտնել։

Աւելի առաջ երթանք. թէ որ խուշրախ, փռչայ, խռպայ, խաւաձ բառերը չիդնէինք, ո՞վ կրնար գտնել անոնց գրաբառը։ Չերկընցընելու համար՝ ամենէն այլանդակը ըսեմ, որուն տակը իմացուի մէկալ բառերն ալ պահելնուս հարկը. խօռբյանմիշ ըլլայ, կամ խօռբյանմիշ եղած բառը թէ որ չիդնէինք, ասոնց գրաբառը ինչպէս կրնար փնտռել ուսանողը։ Ուրեմն քանի որ աս ամեն օտար բառերը չէինք կրնար արտաքսել մեր բառարանէն, ատոնց քիչ մը աւելի՝ քիչ մը պակաս ըլլալը՝ հետևանքմը չըբերեր մեր լեզուին։ Երանի թէ շուտով գայ այն ատենը, որ աս հարկէն խալըսելով՝ կարենանք բոլորովին մաքրել ատ խորթութենէն մեր բառարանը. այսինքն գայ ան ատենն որ՝ աշխարհաբառ լեզունիս ալ ծաղկի, գրաբառէն փոխ առնելով այն ամենայն պակասները՝ որոնք մինչև հիմայ տաճկերէնէն լեցուցած է։ Ան ատենը ուսանողը չիտարակուսիր ինչ բառ փնտռելը բառարանին մէջ՝ անոր դիմացը գրաբառը գտնելու համար։

Բայց կրնայ ըսել մէկն որ՝ ուրեմն Լեհաստանի ազգայնոց համար ալ լեհի բառեր պէտք էր աւելցրնէինք այս բառարանիդ մէջ, Հնդկաստանու՝ Պարսկաստանի և ուրիշ կողմանց ազգայնոց համար ալ իրենց բառերը, որպէս զի իրենք ալ անոնց գրաբառը կարենան գտնալ: Ասոր պատասխանը այն է որ, նախ՝ այս կողմերու ազգայնոց մասնաւոր բառերը մեզի անծանօթ են. և երկրորդ՝ մեր ազգին մեծագոյն մասը Տաճկաստանի մէջ է, ու անկէց դուրս եղող շատերուն ալ բոլորովին անծանօթ չէ այս աշխարհաբառը: Այսու ամենայնիւ, եթէ ուզեն ուրիշ կողմանց ազգայինք ալ աշխատութիւն յանձն առնուլ և խառնել մեզի իրենց գործածած լեզուին մասնաւոր և յատուկ բառերն, պատրաստ ենք աւելցնելու զանոնք ալ այս բառարանիս ետին՝ այբուբենական կարգով, որով գտնան անոնց բուն գրաբառը:

Կը խոստովանինք թէ այս մեր աշխատանքը կատարեալ գործքի մը պէս չենք ընծայեր մեր ազգին, գիտնալով որ դեռ կատարելութեան կարօտ է այս բառարանը. այլ կը խնդրենք որ հիմակու հիմայ ասով գոհ ըլլայ, ինչպէս որ մինչև հիմայ աւելի անկատարովն ալ գոհ եղաւ, մեղուի պէս անոր մէջէն իրեն պէտք եղած հիւթը ծծելով. վասն զի ինչպէս որ եւրոպական առակը կըսէ. Լաւագոյնը լաւին արգելք է. որն որ մենք ասանկ կը բացատրենք. Լաւագունին անյագ տենչ՝ բառնայ և զլաւն առ՚ի մէնջ:

Ե. Հ. Ա.

# ԲԱՌԳԻՐՔ

# ՅԱՇԽԱՐՀԱԲԱՌԷ Ի ԳՐԱԲԱՌ

## ՀԱՆԴԵՐՁ ՈՃՈՎՔ ԵՒ ԲԱՑԱՏՐՈՒԹԵԱՄԲՔ ՆԱԽՆԵԱՑ

---



Աբբայ, կամ Աբբայ հայր. վանքի առաջնորդ: աբբայ. աբբայ հայր. վանահայր. վանէրէց. առաջ ուխտի վանականաց. կրօնահայր. վանաց երէց. առաջնորդ վանաց:
—Աբբայ դնել: աբբայ կացուցանել. վանահայր կարգել. տալ զոք յառաջնորդութիւն վանաց, կամ վանականաց:
—Աբբայ ըլլալ: ունել զառաջնորդութիւն ուխտի. առաջնորդ կալ վանաց. վերակացու լինել վանօրէից:
Աբբայ մեծ, կամ աբբաներու գլուխ: արքիմանդրիտ. կարգապետ. ընդհանրական աբբայ. հայր համօրէն ուխտին. հարանց հայր:
Աբբայութիւն: աբբայութիւն. վանահայրութիւն. առաջնորդութիւն վանաց:
Աբբատուհի. մայրապետներու գլուխ. աբբատուհի. վանամայր. մայր վանից. մայրապետ. տիկին վանից:
Աբբացու: աբբայացու:
Աբեթ. գաւ: աբեթ. լուցկի, լուցկիք: տես և Բռընկցնելիք:
Աբեղայ: տես Կրօնաւոր:
Աբեղաձագ. լոյլը գաւղու: աբոտուա:
Աբրահամու ազգը: աբրահամեան տոհմ կամ զարմ. սերունդ աբրահամու. աբրահամեանք. հրեայք:
Աբրահամուն: աբրահամեան:
Ագահ. Թամահքեար: ագահ. արծաթասէր. ընչասէր. ընչաքաղց. արծաթամոլ. զակատեալ 'ի սէր ընչից. ղօշաքաղ:
Ագահ. Նէհէմ. ագահակամ. ագահամիտ. անյագ. կշեր. ճղճիմ. ժլատ. կծծի. ուշտ. կարկամ 'ի տուրս:
—խիստ Ագահ. բազմուշտ. ագահագոյն:

Ագահ ըլլալ. Թամահքեար օլմագ: ագահել. յագահութիւն հատանիլ. հարկանիլ զագահութեան. հարկանիլ կամ զակատիլ 'ի սէր ընչից. յագահութիւն հեղանիլ:
Ագահ ըլլալ. Նէհէմ օլմագ: ագահել. ժլատել. ուշտել. ճշգել. կծկել զձեռն:
Ագահ ընել: ագահացուցանել. մատնել յագահութիւն:
Ագահութիւն: ագահութիւն. արծաթսիրութիւն. ընչասիրութիւն. սէր արծաթոյ. ղօշաքաղութիւն. ընչաքաղցութիւն. արծաթքաղցութիւն:
Ագահութիւն: ժլատութիւն. կծծութիւն. ուշտութիւն. ճշգութիւն. կարկամութիւն 'ի տուրս: [ճշգիւ:
Ագահութեամբ: ժլատութեամբ. ուշտութ̃բ.
Ագարակ. Չիֆթլիկ: ագարակ. գերդաստան. դաստակերտ:
Ագէկութ. Ագէպան, և այլն: տես Այգէկութ. Այգէպան, և այլն:
Ագի: տես Պոչ:
Ագի. էգի: տես Այգի:
Ագուգայ. Ջրանօլ: ագուգայ. ջրմուղ. խողովակ. ջրանցք. կաւատն:
Ագռաւ. Գարղա: ագռաւ. սակռ:—Ագռաւ դառնալ: ագռաւանալ:
Ագռաւուկ. Գարղաճըգ: եղջերուկ:
Ագումէջ. դամճազին տուալէթը: ցայլք. հալք. աճուկ:
Ադամ: Ադամ. նախամարդ. նախաստեղծ. նախահայր. նախածնող. սկզբնահայր. սկըզբնամարդ:—Ադամին հագածը: ադամազգեստ:—Ադամին զաւակները: ադամայինք. ադամեանք:

Ադամայ. ատէմ էղլէ, եա ինսանիյէ: ադամայ-
ին. ադամեան: '
Ադամորդի: ադամածին. երկրածին. ծնունդ
Նախաստեղծին: [դին. եդեմ:
Ադին. ատամայ դըրախտին էրիէրը: դրախտ. ա-
Ազապ. ըլօրճըլուծ մարդ. էրկէն: ամուրի. ա-
զապ. անամուսին. չամուսնացեալ:
Ազապութիւն. էրկէնլիք: ամուրի կեանք:
Ազառ. տես Զեխ:
Ազատ: ազատ. զերծ. քաւեալ. անմեղ: —Մեղ-
քէ ազատ: քաւեալ 'ի մեղաց:
Ազատ. ուրիշէ փոխ ճէղօլ. քէնտիր գէյֆինէ: անձն-
իշխան. ինքնագլուխ. ալիկամի: տես և Ա-
զատ իշխան:
–Ազատ ազգէ: տես Մեծ ազգէ:
–Ազատ գրած: գրեալ յազատութիւն. ազա-
տագիր. ձեռբազատ: [գունդ:
–Ազատ գրած զօրք: ազատազօրք. ազատա-
–Ազատ գրած տեղ: ոստան:
–Ազատ գրուիլ: գրիլ յազատութիւն:
–Ազատ ըլլալ: տես Ազատիլ:
–Ազատ ընել. ազատագրել: տես և Ազատել:
–Ազատ իշխան. ինքնակալ. ինքնիշխան. ինքնա-
տէր. ինքնագլուխ. միահեծան. միապետ:
–Ազատ իշխանութիւն. ազատ փէրմանլըն: ինք-
նակալութիւն. ինքնիշխանութիւն. միապե-
տութիւն. միահեծան տէրութիւն:
–Ազատ կամք: անձնիշխան կամք. անձնիշխա-
նութիւն. իշխանականն. տիրականն:
–Ազատի պէս: ազատօրէն. ազատաբար:
–Ազատ մարդիկ. ազնուականներ: ազատորեար.
ազատանի:
Ազատել. ազատ ընել. ազէն քըրթէլ. ջէօտէն հա-
նէլ: ազատել. զերծանել. ճողոպրել. կոր-
զել. Թափել. փրկել. արձակել. պրծանել.
ազատեցուցանել. զերծուցանել. ապրեցու-
ցանել. Թողուլ 'ի մահուանէ. կեցուցանել:
–Աստանկ ախտերու մէջ չինալ, ինկողներն ալ
ազատել: մի երբէք ըմբռնիլ յայսպիսի
ախտս, նաև զըմբռնեալսն ևս հանել 'ի
ծանծաղ:
–Թերևս կարենամ իրենց եղբայրը նեղութե-
նէ ազատել: Թերևս կարասցեն 'ի նեղու-
Թենէն գողանալ զեղբայրս իւրեանց:
–Ծառայութէ խալըսեցանք ու որդեգրութե
կարգը հրաւիրուեցանք: վճարեցաք 'ի ծա-
ռայական կարգաց, և յորդեգրութեան վի-
ճակն հրաւիրեցաք:
–Քաղաքը վտանգներէն կ'ազատէին: զքաղաքն
յափշտակէին 'ի վտանգից անտի:
–Ազատէ զքեզ տանջանքէն: յափշտակեա ըզ-
քեզ 'ի տանջանաց:
–Ուզելով ազատիլ որսորդներէն: կամելով
գողանալ զինքն յորսորդաց:
–Հոգերէն ազատեցաւ: Թափեցաւ 'ի հոգոց:
–Շատ ջանացաւ Գագիկ ազատել զանիկայ
պատժէն: բազմաջան լինի Գագիկ Թափել
զնա 'ի պատուհասէն:

–Ազատել՝ գինը տալով: փրկել. փրկանաւո-
րել. փրկագործել:
–Ազատելու համար գրուած գին: փրկանակ:
–Գնով ազատելը: փրկանք:
–Ազատելու գործիք: փրկարան. փրկանիւթ:
Ազատելը: տես Ազատութիւն:
Ազատիլ. կամ ազատուիլ. խուրթուլ: ազատիլ.
ազատանալ. զերծանիլ. պրծանիլ. Թափիլ.
փրկիլ. ապրիլ. արձակիլ:
–Քիչ մը որ վտանգէն ազատին, ան ատենը
աւելի կը վախնան: եթէ սակաւ ինչ 'ի ծան-
ծաղ ելանիցեն 'ի վտանգէն, յայնժամ աւե-
լի ևս կասկածեն:
–Հոգերէն ազատիլ: Թափիլ 'ի հոգոց:
–Մահուընէ ազատիլ: շահիլ զկեանս՝ շահել
զմահ: [ելանել:
–Թշնամիներէն ազատիլ: 'ի գերե 'ի նեղչաց
–Անոնց Թուրէն ազատիլ: պարուրել զանձն
'ի սրոյ նոցա:
–Թօռէն, կամ տուղախէն ազատիլ: վազել
զցանցիւ կամ զորոգայթիւ:
Ազատլամայ } ազատագիր. ձեռբազատ:
Ազատլըխ }
Ազատլըխ. ազատութեան գին: փրկանք. փրկա-
նակ: տես և Ազատութիւն:
Ազատուած, կամ ազատած: ազատեալ. ա-
զատացեալ. զերծեալ. ճողոպրեալ. փըր-
կեալ: տես և Ազատ: —Շուտով ազատած:
երագազերծ:
Ազատուելու: ազատելի. արժանի ազատե-
լոյ կամ ազատութեան:
չԱզատուելու: անազատելի. անզերծանելի.
անճողոպրելի. անկորզելի. անԹափելի. ան-
պրծանելի. անփրկելի. անզերծ. անպուրծ:
Ազատուելու տեղ. ազատութեան փէր: ապա-
ւէն. փրկարան. ապաստան. ապաստարան.
տեղի ապաւինի:
Ազատութիւն. ազատլըխ, կամ ազատլըխ: ա-
զատութիւն. փրկութի. փրկանաւորութի:
–Ազատութիւն տալ: համարձակել ումեք:
–Ազատութիւն տրուած է: համարձակ է.
ընդարձակ է. օրէն է. իշխանութիւն է:
Ազատութիւն. քէնտիր գէյֆինէ ըլմալը: անձնիշ-
խանութիւն. ինքնիշխանութիւն: [նակ:
Ազատութեան յոյս, կամ պատճառ: փրկա-
Ազատութեան տեղ: տես Ազատուելու տեղ:
Ազատող: ազատօղ. ազատիչ. փրկիչ. կեցու-
ցիչ. զերծուցիչ. ապրեցուցիչ. ազատարար.
փրկարար. փրկագործ. փրկագործող:
Ազբ. աւլուխ: ազբն. վերջաւոր. ծոպ:
Ազգ. խըսըմ: տես Ազգական:
Ազգ. ճինս. ձինս: ազգ. ազն. ածու. ահու.
ասր. տոհմ. զարմ. ցեղ. գրոհ. ճիւղ. տուն:
–Հայոց ազգը: տուն Հայոց. տուն Թորգոմայ:
–Հռոմի ազգէն: 'ի տանէն Յունաց:
Ազգ. սիւլալէ. սոյ. սօյսօփ: ազգատոհմ. սե-
րունդ. ազգականութիւն. նահապետու-
Թիւն. զարմ:

—Ազգ ըլլալ: լինել յազգ:
—Ազգ ունող: ազգաւոր. ազնաւոր. տոհմիկ:
—Ազգ չունող: անազգի. անտոհմ. անծնեա:
—Ազգ քշել: սերմանալ. սերել:
—Ազգ քշելը: սերումն. սերունդ. զաւակաւորութիւն:
—Ազգ քշող: ազգասեր. զաւակասեր:
—Ազգը տարող: ազգատեաց:
—Ազգը ընտրող: ազգընտիր. ցեղընտիր:
—Ազգը կորսնցնել, կամ ջնջել: ազգատ առնել. ազգովին ջնջել. ազգաւուխմբ կորուսանել. անծնեանել. անծնեա առնել:
—Ազգը կորսուած, կամ ջարդած: ազգատ. անծնեա:
—Ազգը հատնիլ: ազգահատիլ:
—Ուրիշ ազգէ: այլազգ. այլազգնեայ, այլազգի:
—Ազգը համրող: տես Ազգի համրանք: — Ազգը սիրող: ազգասէր. տոհմասէր: — Ազգի գլուխ, կամ ազգի մը իշխան: ազգապետ. ցեղապետ. տոհմապետ. տոհմագլուխ. նահապետ: — Ազգի գլուխ ըլլալը, կամ ազգի մը վրայ իշխանութիւն: ազգապետութիւն. ցեղապետութիւն. նահապետութիւն: — Ազգի համրանք, կամ ազգը համրող: ազգաթիւ. ազգահամար. տոհմաթիւ: — Ազգիմը համրանքը առնել. ազգահամար առնել. ազգաթուել: — Ազգինը. ազգին եղածը, կամ ունեցածը: ազգային. տոհմային. ազգական: — Ազգի վրայ խօսիլ, կամ պատմել, կամ ազգը ցըցնել: ազգաբանել: — Ազգի վրայ խօսք, կամ պատմութիւն: ազգաբանութի. ծննդաբանութիւն: — Ազգի վրայ խօսող, կամ պատմօղ: ազգաբան. ծննդաբան: — Ազգի տէֆտէր, կամ ազգի գիրք: ազգահամար. տոհմագիր: — Ազգի տէֆտէրը անցնիլ: յազգահամար մտանել: — Ազգովը, կամ բոլոր ազգովը: ազգովին. ազգաւուխմբ. ազգովխմբ:
Ազգական: ազգական. ազգային. տոհմային. տոհմական. ազգակից. արեանառու. արենակից. հարազատ. մերձաւոր:
—Ազգականոց: քուազն:
—Ազգականներ: տոհմայինք. ընտանիք. Թայրաթոռք. համազգիք. համատոհմք. համացեղք՝ արենէք:
—Ազգականի հետ մեղք ընել, պոռնկիլը: ազգապղծութիւն. մծղնէութիւն. ազգաշաղախութիւն. պայղակենութիւն: — Ազգականի հետ մեղք ընող. պոռնկող: ազգապիղծ. ազգաշաղախ. մծղնեայ. պայլիկեան:
Ազգականի հետ մեղք գործելով: ազգապղծաբար:
Ազգական ըլլալ. Գըրըմ օլմագ: համազգի գոլ. ազգախառնել. ազգակցիլ. ընտանենալ. խընամենալ. մերձաւորիլ. խնամութիւն առնել. արեամբ կցորդիլ:
Ազգական ընել. Գըրըմ էթմէք: ազգակցել. տոհմակցել. ընտանեցուցանել. մերձաւորել. ազգ խառնել. խնամեցուցանել. արեամբ կցորդել. խնամախօս լինել:
Ազգական կնիկ: ազգականուհի. ընտանուհի:
Ազգականութիւն. ազգական ըլլալը: ազգականութիւն. ազգակցութիւն. ընտանութիւն. մերձաւորութիւն. համազգութիւն. հարազատութիւն:
Ազգակից. [illegible]: ազգակից. տոհմակից. ցեղակից. համազգի. համասեռ. համասեր. համատոհմ. համացեղ. համազն:
Ազգակից ըլլալ. [illegible] ըլլալ. սօյտաշ օլմագ: ազգակից լինել. ազգակցիլ:
Ազգակից ըլլալը. [illegible] ըլլալը: ազգակցութիւն:
Ազերպայճան: տես Հազրբայջան:
Ազըրն. [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], և այլն: զայրացեալ. սաստկացեալ. բորբոքեալ. զօրացեալ. աճեցեալ. ծանրացեալ. ծանրեալ. կատաղեալ. Ճարակեալ. Ճարակ գտեալ. Ճարակ առեալ. զայրագին. սաստկագին. ծանրագին. չարաչար. դժնեայ. դժնդակ. սաստիկ. ուժգին. մեծ. աճեցուն. Ճարակաւոր:
Ազըրն. [illegible], [illegible], և այլն: յորդ. յորդեալ. սաստիկ. կատաղի: տես և վերի Ազըրնը:
Ազըրնութիւն. [illegible], [illegible], և այլն: զայրացութիւն. զայրացումն. զայրացուկք. զայրոյթ. զայրուկք. զայրուց. սաստկութիւն. բորբոքումն. Ճարակումն:
Ազմայ: տես խիստ Մեծցած:
Ազմիշ ըլլալ. [illegible], կամ [illegible]. [illegible], [illegible], [illegible], և այլն: զայրանալ. սաստկանալ. զօրանալ. ծանրանալ. ծանրիլ. դժնդակիլ. զայրագնիլ. բորբոքիլ. կատաղիլ. եռալ. աճիլ. ձգտիլ. առաւելուլ. Ճարակիլ. Ճարակ գտանել. Ճարակ առնուլ:
Ազմիշ ըլլալ. [illegible], կամ [illegible], և այլն: յորդիլ: տես և վերինը:
Ազնիւ. [illegible]. [illegible]. [illegible]. [illegible]: ազնիւ. ազնուական. պատուական. յարգական. երևելի. պանծալի. նշանաւոր. սիրելի. մեծագին. յարգոյ. կարևոր. քաջ. ընտիր. ընտրական. ընտրելական. փորձ. գոհար:
—Ազնիւ վարդ, կամ խունկ: գոհար վարդ, կամ խունկ:
—Ազնիւ բաներ խօսիլ: պարկեշտս բարբառիլ: տես և Ազէկ, և Գեղեցիկ:
—խիստ Ազնիւ: ազնուագոյն. ազնուականագոյն. պատուականագոյն. ընտրելագոյն. գերազանցագոյն. մեծարգի. մեծարգոյ. երևելի յոյժ. գերապանծ:
—Ազնիւ սիրտ ունեցող: ազնուագութ:
—Ազնիւ կերպ ունեցող: ազնուակերպ:
—Ազնիւ կերպով: ազնուաբար. ազնուապէս:
—Ազնիւ ըլլալ: ազնուանալ. պատուական գոլ:
—Ազնուցընող: ազնուարար. ազնուագործ:
—Ազնիւ ընել. [illegible]: ազնուացուցանել. պատուականացուցանել:

–Ազնիւ կերակուր: խորտիկ. համադամք:
–Ազնիւ կերակուր ուտել: խորտիկս ուտել. խորտկաճաշ լինել. համադամս ճաշակել:
–Ազնիւ կերակուր ուտելը: խորտկակերութի. խորտկաճաշութիւն: [խորտկաճաշ:
–Ազնիւ կերակուր ուտող: խորտկակեր.
–Ազնիւ կերակուրներով լեց: լիախորտիկ. մեծահաց:
–Ազնիւ կտաւ. խասս պէզ: բեհեզ. կերպաս:
–Ազնիւ հագուստ. կամ լաթ: հանդերձ պայծառ. պատմուճան:
–Ազնիւ հագուստ հագած: պայծառազգեաց. պատմուճանեալ:
Ազնուական. ասիլզադէ: ազատ. սեպուհ. ազնուական. ազատազգի. տոհմիկ. ազնուատոհմ. ազատորդի. բարետոհմիկ. մեծազգի. մեծատոհմ. քաջազգի. քաջատոհմիկ:
Ազնուականներ: ազատանի. ազատորեար. աւագանի. ազատակոյտ. ազատերամ:
Ազնուականաց զաւկըներ: մանկտաւագ. ազատորդիք. մանկլաւիկք:
–Երկրին ազնուականները բոլոր: համաշխարհազատ:
Ազնուականի զաւակ: ազնուորդի. ազատորդի:
Ազնուութիւն: ազնուութիւն. ազնուականութիւն. պատուականութիւն. ընտրականութիւն. քաջութիւն. արութիւն:
Ազոխ. ճօռա. գօռուք: ազոխ. խաղող խակ. ժռատ: — Ազոխ եղած: ազոխացեալ: — Ազոխ ըլլալ: ազոխանալ: — Ազոխ ընել: ազոխացուցանել:
Ազարմիշ ընել. ծանըրլընել, կամ չօքալընել, կամ տաֆքանէլ հիտտէթլէնտիրմէք, խըզը, չոք ռավճըր-թըմէք, և այլն: զայրացուցանել. սաստկացուցանել. ծանրացուցանել. աճեցուցանել. զօրացուցանել. ճարակեցուցանել. բորբոքել. զայրագնել. առաւելուլ:
Աթ մէյտանը. ձի կոշընմաք եէրի: ձիընթացք. ասպարէզ. ձիարձակարան. կրկէս. թէատրոն. ստադիոն: — Աթ մէյտանին վազել: արշաւել 'ի ձիընթացս. ընթանալ յասպարիզին. ձիարշաւ առնել կամ ձիավարել 'ի կրկէսի:
Աթ պալըղը. յն. հիբբօբօթամօս: ձիագետի. գետաձի:
Աթար. Եզին: աթար. քակոր. տապաւառ. գշկուր: [րայ:
Աթէշ պէօճէկի. կոծօռտի: փոսուռայ. փոսու-
Աթինայ: Աթէնք. Ատտիկէ:
Աթինացի: աթենացի. ատտիկեցի:
Աթլազ: տարազ:
Աթլազճը: տարազագործ:
Աթլամայ: տես Փարուստ:
Աթմաճայ: որի. բազէ. տես և Բազայ:
Աթմայ թութմայ: տես Մեծ մեծ խօսք, և Վախ տալը: [և Վախ տալ:
Աթմիշ թութմիշ ընել: տես Մեծ մեծ խօսիլ,

Աթոռ. քիւրսի: աթոռ. գահ. գահոյք. նիստ. նստարան. հանգստարան. բազմարան. բազմական. բազմոց. բազմիք. նստիք: — Աթոռ դնել կամ տալ մէկու մը: աթոռ արկանել:
–Աթոռ փառաւոր: տես Թախտ:
Աթոռ. մանսապ: տես Իշխանութիւն:
–Աթոռը ուրիշ տեղ տանիլ: փոխել զաթոռ:
–Աթոռի ցանկալ, եւեւէ իյնալ: գահասիրել:
–Աթոռէն իջեցնել: արկանել, ընկենուլ, քակել յաթոռոյ:
–Աթոռի կռնակ, ուր կը կռթընին: մնարք կամ թիկունք աթոռոյ:
–Կռնակ ունեցող աթոռ: թիկնաթոռ:
–Աթոռին թեւերը: անկիւնք աթոռոյ:
Աթոռակալ: աթոռակալ. գահակալ. փոխանորդ. փոխանակ. տեղակալ. տեղապահ. երկրորդ:
–Աթոռակալ ըլլալ: փոխանորդել. գահակալել. տեղակալել:
–Աթոռակալ չունող: անփոխանորդ:
Աթոռակալութիւն: աթոռակալութիւն. գահակալութիւն. փոխանորդութիւն. փոխանակութիւն. տեղակալութիւն. տեղապահութիւն: [փոքրիկ:
Աթոռիկ: աթոռակ. գահաւորակ. բազմոց
Աժան: դիւրագին. սակաւագին. թեթեւագին. փոքրագին. դիւրավաճառ: — Աժան առնել, կամ գնել: դիւրագնի ստանալ. թեթեւագին գնել: — Աժան ծախել: դիւրագին, կամ թեթեւագին վաճառել. տալ գոյզն գնոց:
Աժդարխան. քաղաք է: Մաքթուպօլիս. Մաքըթաց քաղաք: [քութք:
Աժդարխան. գաւառ է: մաքըթաստան. Մաս-
Աժդարխանու ծով: ծով Վրկանի. ծով Կասպից. ծով կասպիական:
Աժել, կամ արժել: արժել. արժան լինել. կշռել: — Ինչ որ կ'արժէ նէ: որ ինչ և արժան իցէ: — Բոլոր աշխարհքս կ'աժէ: կշռէ կամ արժէ զամենայն աշխարհս:
–չԱժել: չարժել. ոչ արժել. ոչ կշռել:
Աժընկէկ: թեթեւագին. դիւրագին:
Աժնութիւն: դիւրագնութիւն. թեթեւագնութիւն. դիւրագին վաճառք:
Աժտէր: տես Վիշապ:
Աժտէրխան: տես Աժդարխան:
Աժօղ: արժօղ. մեծագին:
Ալ. տախի. դէ. դախի. զոր օրինակ. անանց ալ. ցեզ ալ: եւ. և եւ. այլ և. այլ եւ. նա և. նա եւ. խակ. խակ և. տի. տինա. և. զոր օրինակ: — Ձեզ ալ վայ: և ձեզ վայ:
Ալ. ալըմը, կամ արթըք: այսուհետեւ. յայսմ հետէ. այնուհետեւ. յայնմ հետէ. այլ եւ. եւ. այլ. ոչ եւ:
–Ալ չեմ կրնար: այլ ոչ կարեմ:
–Ալ չեմ մտմտար: ոչ եւ խորհիմ:
Ալ. փախըյ: եւ. և եւ. այլ եւ. առաւել:
–Ալ. բաղդատական. գոյն մանիկով:

-Ալ գէշ: չարագոյն. յոռեգոյն:
-Ալ լաւ: լաւագոյն. բարեգոյն:
-Ալ անդին: անդի և անդր. ծն անդր. և ևս. անդր ևս: [անդր ձգէին:
-Միտքը անկէց ալ անդին կ'երթար: միտքն ծն
-Աստուած կը քշէ իր Թագաւորութիւնը յաւիտեան,ու ալ անդին: Տէր Թագաւորէ յաւիտեան և յաւիտեանս և ևս:
Ալ ըսել. փաղաց զհապէ: ևս առաւել. առաւել ևս. առաւելագոյն. ծն անդր. և ևս:
-Ալ ըսել վրայ դնել: յաւելուլ ևս. սաստկացուցանել. պնդել:
-Ալ մի: մի ևս:
-Ալ մի ըսեր: մի ևս ասասցես: [ասէք:
-Ալ ուրիշ տեղէ չէ: ոչ ուստեք. ոչ այլ ուս.
-Ալ չ. կամ ալ չի: ոչ ևս:
-Ալ չեմ ըներ: ոչ ևս առնեմ:
-Ալ չի գար: ոչ ևս եկեսցէ:
Ալ. կրմիզի, կամ արտանի գուն անող: աշխէտ. հրագոյն. ատրագոյն. արիւնագոյն. հիր:
Ալայ գարկայ. կամ ալխառղայ. կամ ալաճայ գարկայ. ագռաւու նման խաղողէն թռչուն մի է: սերմանաքաղ. բարու:
Ալաճայ: տես Խատուտիկ: [տիկ:
Ալաճայ պուլաճայ: տես Խատուտիկ խատու.
Ալաճայ ընկած. այգի, պտուղ. և այլն: տես Խայտ ընկած:
Ալաճայ ընկնիլ: տես Խայտ ընկնիլ:
Ալայ. հանդիսաւոր բազմութիւն: հանդէս. թափօր. կացուրդ: տես և Հանդիսութիւն:
Ալայ ելլել. | 'ի հանդէս մտանել. հանդիսա.
Ալայ կապել. | նալ:
Ալայ ընել: հանդէս առնել. տօնել. տօնախմբել:
Ալայ ընել զօրաց: հանդէս առնել զօրաց:
Ալայլը: տես Հանդիսաւոր:
Ալա́յ մալայ: սպառ սպուռ. բովանդակ:
Ալայ մալայ: կարի խիկ քաջ:
Ալայտաշ: տես Հանդիսակից:
Ալաշկերտ, կամ Վաղարշկերտ. գաւառ է: Վաղարշակերտ:
Ալէլուիայ. Եբրայեցւոց բառ է: ալէլուիայ. ալէլու: — Ալէլուիայ ըսել. կամ ալէլուիայով օրհնել: ալէլուել. ալէլուիայիւ օրհնել:
Ալէկոծել: ալէկոծել. նաւակոծել. նաւակոծ առնել. ալէկոծ առնել. ծփել:
Ալէկոծիլ. Քօղքանայ տալչը: ալէտանջ լինել. ալէկոծիլ: [կոծանաց:
Ալէկոծութենէ քշուած: վարեալ յալեացն
Ալէկոծմունք, կամ ալէկոծութիւն: ալէկոծութիւն. ալէկոծումն. ալէսաստութիւն. ալէտանջութի. ծփանք կամ զբօսանք ծովու:
-Ցամաքի վրայ նստածի պէս ապահով է ալէկոծմունքներէ: իբրև 'ի ցամաքի յապահովութեան նստիցի յալեաց կոծանաց:
խիստ, կամ մեծ Ալէկոծմունք: անհնարին, կամ սաստիկ ալէկոծութիւն. երրադարձ ալիք. երեք ալեան խռովութիւն:

Ալէկոծմունք ըլլալ: յառնել ալէկոծութեան. ուռնուլ կամ ալէկոծիլ, կամ ալէկոծ լինել ծովու:
-Ալէկոծմունք կրել: ալէկոծիլ. հողմակոծիլ. նաւակոծիլ. ծփիլ. ծփալ. նաւակոծ լինել:
-Ալէկոծմունք կրող: ալէկոծ. նաւակոծ. ծովակոծ. ծովածուփ. ալէկոծեալ. նաւակոծեալ. ծփեալ:
-Ալէկոծմունք հանել: ալէկոծել. հողմակոծել. ալէկոծութիւնս յարուցանել. ամբոխել զծով:
-Ալէկոծմունք հանօղ: ալէսաստ. ալէտանջ. հողմակոծ. հողմածուփ. ծփական:
-խիստ, կամ շատ Ալէկոծմունք ունօղ: ծփալից. բազմալեան. բազմակոհակ. յոգնակոհակ. բարձրակոհակ:
-Ալէկոծմունք չունօղ: անկոծ. հողմախաղաղ. հանդարտ. խաղաղաւէտ:
-Ալէկոծմունքը դադրիլ, կամ իջնել: տես Դադրիլ, և այլն:
-Ալէկոծմունքի մէջ ձգել: տես Ալէկոծել:
Ալէկոծօղ: ալէկոծիչ. նաւակոծիչ. ալէտանջ. ալէսաստ: [մէկէն:
Ալէսէվլիէ: տես Ընդհանրապէս, և Ամմէնքը
Ալէվլկել: իգացուցանել. խենեշացուցանել. կնատել:
-Ալէվլկելով խօսիլ: գէլուլ կամ մեղմեղել զխօսս. բեկբեկել զբանս. աչրել:
-Ալէվլկիլ. Խոյան ողը եղնիլն ըլլալ: աչրել. բեկբեկիլ. իգանալ. կնատիլ. խենեշանալ. ցոփանալ. շփանալ:
-Ալէվլկիլը | աչրանք. աչրութիւն. շփացութիւն. մեղմեղանք. կնատութի. իգութիւն. խենեշութիւն. ցոփութիւն:
-Ալէվլկուք |
-Ալէվլկօղ | աչրող. իգացող. իգացեալ. խենէշ. ցոփ. լռյծ:
-Ալէվլուկ |
Ալէֆ: տես Բոց:
Ալթիւստ. Ալթիւստ ըլլալ. և այլն: տես Ներքև վրայ. Ներքև վրայ ըլլալ. և այլն:
Ալիք. փալղայ. խում: ալիք. կոհակք. մկանունք. ծուփ. ծփանք. զբօսանք ծովու:
-Ալիքներու վրայ շարժօղ: ալէծուփ. ալէտատան:
-Շատ ալիք ունեցօղ: բազմալի. բազմակոհակ. բազմածուփ. յոգնածուփ. յոգնակոհակ:
-Մանր ալիքներ: գանգուրք ալեաց. ծուփք. վէտք:
Ալլը փուլլու: ոսկեհուռ զարդարեալ. պաճուճազարդ. վայելչազարդ. պալարակապ:
— Ալլը փուլլու ընել: ոսկեհուռ զարդարել. գեղազարդել. վայելչազարդել:
Ալճը: տես Հնարագործ. և Խաբեբայ:
Ալոճ. հալըճ: ալոճ:
Ալուբ. ուն: Ալիւր:
-Բարակ ալուր: նաշիհ. գերմակ ալիւր. սեմինդր. սիղիգն:
-Ալուր սրբիչ, կամ ալըր սրբիչ: գերբն:
-Ալըրի չափ: արգու. գրիւ:

Ալչի: բուռ. գամ:
Ալպանիա. [illegible]: Ալբանիա. Աղուանք. աշխարհ Աղուանից:
Ախ: տես Ախլանք և Կրունկ դրան:
Ա՛խ. ահ: ա՜հ. ո՜հ. ո՜վ. ո՜:
Ա՛խ ա՛խ: ա՜հ ա՜հ. ո՜հ ո՜: [ռաչել:
Ախ ընել, կամ ախ կանչել: հեռալ: տես Հա-
—Որոնք որ ախ ախ կ'ընեն զձեզ ճնշելու: որ հեռայցեն կորուսանել զձեզ:
—Ախ ընելը: տես Հառաչանք:
—Ախ ընօղ. ախ կանչող: տես Հառաչօղ:
Ախարէթ. [illegible]: գերդաստան. կալուած. ստացուած:
Ախարէթ. կէլէր: մուտք. հասոյթ: [այլոյն:
Ախարէթ. [illegible]: տես Ապրուստ. և
Ախըլպալըխ: արբունք:
—Ախըլպալըխ ըլլալ: յարբունս հասանել. 'ի տիս լինել. ջլթափել:
Ախըլցխու գաւառ: Սամցխէ. Շամցխէ:
Ախըլցխու երկիր, կամ աշխարհ: Տայք:
Ախըրնար: հասանք. յորձանուտ. յորձանք:
—Խորունկ ախըրնար ունեցող: յորձախոր. յորձանախոր. յորձանուտ:
—Ախըրնարի պէս եռացող: յորձնեռանգն:
—Ախըրնարի պէս վազող: յորձանահոս. յորձանախաղաց:
—Ախըրնարն ընկնիլ: անկանել 'ի յորձանուտն:
—Ախըրնարն տանիլ: վարել յորձանաց:
Ախլանք: աղխ դրան. ախ դրաց. փակաղակ. փականք. փակարան. փակ: տես և Դրան փակը:
Ախճիկ: աղջիկ. կուսան. կոյս. օրիորդ:
—Ախճիկ ղուզը: դուստր. ճաւակեթ:
—Ախճիկ մեծ. [illegible]: օրիորդ. երիտասարդուհի:
—Ախճիկ առնել փախչիլ: առևանգել. հափափել. յափշտակել: [րիօրդ:
—Ախճիկ տղայ. Գըզ ողլան, Գըզ: կուսան. օ-
—Ախճիկ կարգել: հարսնացուցանել. ամուսնացուցանել զդուստր. ամուսնաւորել:
—Ախճիկ նշանել: տես Նշանել զախճիկը:
Ախմախ: անմար. տխմար. անգէտ. տգէտ. տգիտաբարոյ. պանդոյր. խօթամիտ. տղայամիտ. չամբուշ. շլամիտ. տղայաբարոյ: տես և Միամիտ:
—խիստ Ախմախ, կամ ախմախին ախմախը: անմարագոյն. ամենատխմար. անբան. անասնամիտ: [նիլ. վրիպիլ 'ի հանճարոյ:
—Ախմախ գտնուիլ: անմտանալ. անմար գտա-
—Ախմախ ըլլալ: անմարանալ. տխմարանալ. տգիտանալ. անգիտանալ. յիմարիլ. շամբշիլ: տես և Խենթենալ:
Ախմախութիւն: անմարութիւն. տխմարութիւն. տգիտութիւն. անգիտութիւն. շամբշութիւն. շլամտութիւն. անասնամտութիւն. անբանութիւն: տես և Խենթութիւն:
—Ախմախութեամբ: անմտաբար. անհանճարաբար:

Ախոռ: ախոռ. ձիատան. ասպաստան. գոմ:
Ախոռապետ. Իմրահօր: ախոռապետ. ասպաստանապետ:
Ախորժիլ: ախորժել. հաճիլ. սիրել. կամել. յօժարիլ:
—Ախորժելով ընդունելով քու խնդիրքդ: հեշտաբար ընկալեալ զքո խնդիրդ:
—Ինչպէս որ ես կ'ախորժիմ: որպէս իմս ախորժեն կամք:
—Ախորժանք: ախորժ. ախորժակ. ախորժանք. յօժարութիւն:
Ախորժանօք: ախորժաբար. սիրով. մտադիւր. յօժարութեամբ. ախորժիւք:
Ախորժելի: ախորժ. հաճոյ. քաղցր. սիրելի. ախորժելի:
—խիստ Ախորժելի: զմայլական:
—Ամպերէն եկքը արեւը ախորժելի է: քաղցր է արև յետ ամպոց:
—Ախորժելի է ինծի անոր վրայ խօսել: սիրելի է ինձ ասել զնմանէ:
—Սանթուրը ախորժելի կ'ընէ եղանակները: հեշտացուցանէ սաղմոսարան զնուագս:
Ախուվախ: տես Հառաչանք:
Ախուվախ ընել: տես Հառաչել:
Ախպապայ. [illegible] է: անգղ:
Ախպար: տես Եղբայր:
Ախստևու գաւառ: Աղստև:
Ախտէր: փերեզակ. փերեզիկ:
Ախտէրութիւն: փերեզակութիւն:
Ախրէպ: կարիճ:
Ած: տես Այծ և զհետևեալս նորա:
Ածական անուն: ածական. մակդիր:
Ածան. հաւ: ձուաբեր:
Ածել. հումուրթա աչէլ: ձու ածել. ձու բերել:
Ածըլած, կամ ածիլած: գերծ. փոքրեալ. հերատ. գլխագերծ:
Ածըլել, կամ ածիլել. Թրաշ էթմէք: գերծանել. գերծել. գերծուլ. սափրել. փոքրել. սրբել. յապաւել զհերս. ածել. վիրալ:
—Ան օրը ածըլէ պիտոր Աստուած իր մեծ ու վարձ ածելիովը, ասորեստանի թագաւորին գետին մէկալ կողմը, գլուխն ու ոտքին մազերը, ու մօրուքն ալ ածըլէ պիտոր: յաւուր յայնմիկ գերծցէ Տէր սրովն մեծաւ և արբեցելով յայնկոյս գետոյն թագաւորին ասորեստանեայց զգլուխ և զմազ ոտից, և զմօրուսն սրբեսցէ:
—Ածելիով ածըլել: ածել ածելեաւ:
—Ծառաներուն մազերն ու մօրուքը ածըլեցին: ածին զհերս և զմօրուս ծառայից նորա:
Ածըլելը, կամ ածըլուիլը: գերծումն. յապաւումն: [ծողական. սափրական:
Ածըլելու միւթալլիա: սափրողական. գեր-
Ածըլի, կամ ածիլի: ածելի. երկաթ. մազքրիչ. սրբիչ: [գլուխ իւր:
Ածըլուիլ: տալ փոքրել զհերս. սափրել ըզ-
Ածըլօղ, կամ ածիլօղ: վարսավիրայ. սափրիչ: տես և Պէռպէռ:

Ակօս. էքլէք: ակօս:
-Ակօս բանալ: ակօսս արկանել. ակօս ձգել. ակօս պատառել. ակօսաբեկ առնել. ակօսել:
-Ակօս բացած տեղ: ակօսաձիգ տեղի. ակօսեալ վայր: [սատար:
-Ակօս բացօղ: ակօսաբեկ. ակօսաձիգ. ակօ_
-Ակօսի պէս, կամ ակօսի նման. ակօսաձև. ակօսակերպ. ակօսանման:
Ա՛հ: տես Ա՛խ:
Ա՛հ ա՛հ: ա՛հ ա՛հ. ո՛հ ո՛հ:
Ա՛հ ընել. ա՛հ կանչել: տես Հառաչել:
Ահ: տես Վախ:
-Ահ տալ: տես Վախ տալ:
Ահաւոր. գօրգուլու. գօրգունչ: ահաւոր. ահեղ, ահարկու. երկեղուտ: [խարտ:
Ահաւոր ձի. ահիպարանոց. սօս. խրոխտ. յա_
-խիստ Ահաւոր. խէյլի գօրգունչ: ահագին. ասկագին. զարհուրելի. զարհուրեցուցիչ. սարսափելի. պակուցանողական. հիազարհուր. ահեղահրաշ:
-Ահաւոր զօրք, կամ պէօլիւկ: ահեղազօր. ահեղասպայ:
-Ահաւոր ձայն ունօղ, կամ ահաւոր ձայնով կանչօղ: ահեղագոչ. ահագնագոչ. ահաւորագոչ. ահագնալուր, խրոխտաձայն:
-Ահաւոր նշան ունօղ: ահեղանշան:
-Ահաւոր պարիսպ ունօղ: ահագնապարիսպ:
-Ահաւոր տեսք ունօղ: ահագնատեսիլ. ահեղատեսիլ. ահեղակերպ:
Ահաւորութիւն. ահաւոր ըլլալը: ահաւորութիւն. պակուցումն. ահեղութիւն:
Ահէնկ. էհէնկ: տես Եղանակ:
Ահէնկ. ուֆֆէլ: տես Հանդիսութիւն:
Ահրա: տես Ախոռ:
Ահուդող: երկիւղ. սոսկումն. պակուցումն. սոսափիւն. սոսաւէն. սարսափումն. սարսուռ. արհաւիրք: տես և խիստ մեծ Վախ:
-Ահուդողը մէջ ընկնել: զահի հարկանել. զերկիւղի հարկանել. զդողանի հարկանել. պակնուլ: տես և խիստ Վախնալ:
Ահուրան: տես Գարեգետ:
Ահրամարանք. Ահրամահրել. և այլն: տես Քամահրանք. քամահրել:
Աղ. Թօռ: տես Թոռ:
Աղ. կէրակէրա ցանէլիք. Թուզ: աղ:
-կտոր Աղ փայլուն. պէքիրաչ Թուզու: աղուձակ. գուրձ:
-Քիչ մը աղ: աղիկ:
-Աղը գնել: յաղաղ արկանել. յաղոց գնել:
Աղ օրհնելու աղօթք: աղօրհնէք:
Աղ ցանած. աղած: աղեալ. յաղեալ. աղիւհամեմեալ: [մել. աղել. յաղել:
Աղ ցանել. աղէլ. աղ արկանել. աղիւ համե_
-Աղ ցանել արտին մէջը, կամ աղով հերկել: աղարտել. աղարա վարել:
-Աղ ցանօղ: յաղիչ:
-Աղէ, կամ աղէ շինած: աղեայ. աղակերտ:
-Աղը գնել. աղամանով ընել: աղծել. ապխտել.
յաղել: [յաղեալ:
-Աղը գրած. աղծեալ. աղկեր. ապխտեալ.
-Աղի ամա՛ն: տես Աղաման:
-Աղի մատէն: աղահանք. աղոտք. աղուտք:
Աղալ. տէյիրմէնով մանքրէլ: աղալ. աղօրեօք մա_
-Աղացած: աղացիկ (խուռնկ և այլն): [լել:
Աղալանմիշ եղօղ: նազող. սէգ:
-Աղալանմիշ ըլլալ. աղայանէին ճալմէլ: նազել. ճոխանալ. սիգալ:
-Աղալանմիշ ըլլալով քալել. ճէօլմէօվ, կամ ճէօլօմէօվ ճալմէլ: սիգալ. նազել. սիգաճեմ շրջիլ. սիգաճեմ գնալ. ճոխանալ 'ի գնացս. պարծ շրջիլ. պարծ ճեմել. ճոխաճեմ գնալ. սիգաճեմիլ: [գաճեմ. սիգաքայլ:
-Աղալանմիշ ըլլալով քալօղ: ճոխաճեմ. սի_
Աղախին: աղախին. աղջիկ. նաժիշտ:
-Աղախին խաթունի, կամ տան տիկնոջ: նաժիշտ. օրիորդ. զառանջաւոր: [տածին:
-Աղախին տիրոջը տունը ծնած: ընդոծին. ըն_
-Աղախնու անուն ունօղ: աղախնանուն:
-Աղախնու եղածը, կամ ունեցածը: աղախնային: [ղախնորդի. աղախնածին:
-Աղախնու զաւակ, կամ աղախնէ ծնած: ա_
Աղախնութիւն ընել: աղախնել:
Աղած: տես Աղ ցանած:
-չԱղած: ոչ յաղեալ. անաղ:
Աղաղակ. խանչըլը. չաղըրդը: աղաղակ. բարբառ. գոչումն. գոչիւն. գանչումն. գանչիւն. գանգիւն. ճիչ. ձայնարկութիւն. ձայնարձակութիւն: տես և Հէնկեամէ:
-Աղաղակ վերցնել: աղաղակել. գոչել. կարդալ. ձայնել. գոռալ. աղաղակ բառնալ. աղաղակ հարկանել. ձայն բառնալ. ձայն արկանել. ձայն արձակել:
-Աղաղակով վրայ վազել. չաղըրըշարագ խուճում էթմէք: խիզախել. գրոհ տալ մեծաձայն:
Աղաղակաւոր: աղաղակաւոր. մեծաձայն. մեծաբարբառ. մեծագոչ. մեծակառաչ. գառնակառաչ. բարձրաձայն. բարձրաբարբառ. բարձրագոչ:
Աղաղակել: տես Աղաղակ վերցնել:
-Աղաղակել տալ: գոչեցուցանել. բարբառեցուցանել:
Աղաճխաւունի, կամ աղաձղաւունի: կխտորոն:
-Աղաճխաւունիի ծառ: կխտորենի:
Աղաման. աղի աման: աղանոց. անօթ աղի:
Աղայ. պարոն: տէր. աւագ. ամիրայ. պարոն. իշխան. պետ. գլուխ. գլխաւոր. սալար. տանուտէր. հայր. կիռ. կոմս. ռամիկան. վեհ. քաղ:—Քաղքին աղաները կը պահէին զան: Ճոխք քաղաքին մնուցանէին զնա: տես և Աղաւէթ: [ծարու:
-Աղայ եօլլու: նազելի. յարգի. յարգոյ. մե_
-Աղայ եօլլու. (մէքէյ:) տես Աղայի պէս:
-Աղայ ըլլալ: տիրանալ. աւագանալ. սիգանալ:
-Աղայ ընել: տէր առնել. իշխան առնել. տիրացուցանել: [նաքար. ճոխաբար:
-Աղայի պէս: տիրապէս. տիրաբար. իշխա_

—Աղայի պէս ժուռ գալ։ պարծ շրջիլ. պարծ ձեւել. ձոխաձեւ շրջիլ. սիգալով գնալ։
—Աղաներ. ազալար։ աւագանի. գլխաւորք. մեծամեծք. գահերիցունք. տանուտէրք. ձոխք քաղաքի։
—Աղաներու, կամ աղաւէլթներու ժողով։ աւագորեար. աւագախումբ։
Աղայութիւն։ տէրութիւն. աւագութիւն. աւագոյթ. իշխանութիւն. գլխաւորութիւն. ձոխութիւն. պերճութիւն. վեհութիւն. վեհանձնութիւն. մեծանձնութիւն. գահերիցութիւն. նախապատուութիւն. նախարարութիւն։
Աղանդ. ծուռ վարդապետութիւն։ աղանդ. օտարաձայնութիւն. նորաձեւութիւն. այլափառութիւն. օտարափառութիւն. մոլորութիւն. հերձուած. հերեսիովոտութիւն։
—Կերպ կերպ աղանդներ ունեցող։ բազմաղանդ։ [ձուածս։
—Աղանդ հնարել։ մուծանել աղանդ կամ հեր-
—Աղանդ հնարող։ աղանդահնար. օտարուսումն. նորակրօն. հերեսիապետ. աղանդապետ. աղանդագլուխ. աղանդադիր։
—Աղանդով լեցուն։ աղանդախումբ։
—Աղանդ ունող։ տես Աղանդաւոր։
—Նոյն աղանդը ունեցող։ աղանդակից։
—Աղանդի դէմ գնող։ աղանդամարտ։
—Աղանդ չունող։ անաղանդ. անմոլար. անհերձուած. ուղղափառ. ուղղիղհաւան։
—Աղանդի թուղթ։ աղանդիք. յուռութ ուլունք. բժժանք։ [ցանել։
—Աղանդի մէջ ձգել։ աղանդել. մոլորեցու-
Աղանդաւոր։ աղանդաւոր. աղանդասէր. նորակրօն. մոլորակրօն. նորահաւատ. նորափառ. այլափառ. օտարափառ. աղանդամիտ. աղանդապաշտ. աղանդասար. հերձուածող։ տես և Հերետիկոս։
Աղաչանք։ աղաչանք. պաղատանք. մաղթանք. խնդիր. աղերս. ողոք. խնդրուած. հայցուած. արգահատութիւն. աղերսարկութիւն. աղերսաբանութիւն։
—Աղաչանք ընել։ տես Աղաչել։
—Աղաչանքով լեցուն։ յոգնաթախանձ. բազմաթախանձ. թախանձագին. թախանձալից. աղերսալից։
Աղաչել։ աղաչել. աղերսել. մաղթել. պաղատել. ժտել. ողոքել. աղօթել. արգահատել. աղերսաբանել. աղաչանս հեղուլ. աղօթս սփռել. յաղերս անկանել կամ մատչել. աղաչանս մատուցանել. աղերս արկանել. աղերս մատուցանել. պաղատանս մատուցանել. յաղերս, յողոք անկանիլ։
—Երեսս կաղաչէին Աստուծոյ առջևը։ գութս ողոքանաց արկանէին առաջի բարերարին։
—Կաղաչենք զքեզ։ առաջի քո հեղումք ըզխնդրուածս։
—Աղաչելով։ աղաչելով. պաղատախառն։
—Աղաչելով խօսող։ աղերսաբան։
—Աղաչելով ուզել։ մաղթել. հայցել. խնդրել. ժտել. թախանձել։
—Աղաչելով ուզելը։ տես Խնդրուածք։
—Աղաչելով խօսիլ։ աղերս խօսիլ։
Աղաչօղ։ աղաչող. աղերսող. մաղթող. պաղատող. ողոքիչ. աղաչաւոր. ողոքաւոր. աղօթկեր. աղօթական. աղօթաբան. աղերսաբան. աղերսարկու. աղերսաւոր. աղերսահայց։
—Մէկ տեղ աղաչօղ։ աղերսակից. աղաչակից։
—Խիստ Աղաչօղ։ յոգնաթախանձ. մեծապաղատ. բազմապաղատ։
Աղաւէթ։ վեհանձնեայ. վեհանձն. մեծանձն. փառազուն. մազդեղն. գիւցազն. ձոխ. սեգ։ տես և Աղայ։
—Աղաւէթ հար ունող, կամ աղաւէթ հօր որդի։ հօրամոյն. քաջահայր։
Աղաւնի։ տես Աղւընի, և զհետեւեալս նորա։
Աղբ. Տուբբառուլ։ աղբ. աղբև. աղբիւս. աղբիք. կղկղանք. գարշելիք. աղտեղութիւն. կարեք որովայնի. նստած. — իր Աղբը կերաւ։ զնստած իւր եկեր։
—Աղբ ֆորա։ տապաւառ։ տես և Վերինը։
—Աղբ ուլուրի, յանի հայվանի։ սպտուր. քակոր. կոււ. թրիք. փին։
—Աղբ շան, յանի գոփանի։ կոււ. փին։
—Աղբ Բողչայ, յանի ջաֆէրու։ ծիրտ։
—Աղբ գոխճայի. Փէշխը։ աղբիւս. աղբիք. աղբ պարտիզի։
—Աղբ հոտած և Չէլէյած. Կէրից։ ժահր. ժահ։
—Աղբ խառնօղ։ աղբեայոյզ. աղբապատիռ։
—Աղբ կրող, կամ տանող։ աղբակիր։
—Աղբ ուտող։ աղբակեր։
—Աղբ սիրող։ աղբասէր։
—Աղբէ, կամ աղբի պէս մուռնտառ։ աղբեղէն. աղբային։
—Աղբը գուրս տալ, կամ գուրս թափել։ վարել արտաքս զկղկղանս. թրքել։
—Աղբի դէզ։ աղբակոյտ։
—Աղբ դառնալ։ թրքանալ։
Աղբանոց։ տես Ոտից Ճամբայ։
Աղբանոց. աղըսի+ի փէր. չէօփլիւք։ կոյանոց. աղբիք. աղբիւս. աղբոց. աղբանոց. աղբակուտոց։ [մածին։
Աղբար. Գարտաշ։ եղբայր. հարազատ. հա-
—Աղբօր պէս։ եղբայրաբար. եղբայրապէս։
—Աղբօրը հետ բաժնել։ եղբայրաբաժին առնել։ [բայրագրաւ։
—Աղբօրը արունը մտնող։ եղբայրադաւ. եղ-
—Աղբար սեպուած։ եղբայրաթիւ։
—Աղբօր պէս միաբանութիւն։ եղբայրակցու-
—Աղբօր պէս ըլլալ։ եղբայրանալ։ [թիւն։
—Աղբարը շահող։ եղբայրաշահ։
Աղբար. Եարան. Եօլտաշ։ եղբայր. ընկեր. սիրելի. մտերիմ. աջակից։ տես և Ընկեր։
Աղբար ըլլալ. Եղէօր օլմագ։ եղբայրանալ. գրել յեղբայրութիւն. ընկերանալ։
—Աղբար ընել։ եղբայրացուցանել. գրել յեղ-

բայրութիւն. ընկերակցել. աջակցել:
–Աղբարը առնելը: եղբայրատեցութիւն:
–Աղբարը ատօղ: եղբայրատեաց. ընկերատեաց:
–Աղբարը սիրելը: եղբայրսիրութիւն:
–Աղբարը խաբօղ: եղբայրադաւ:
–Աղբարը սիրօղ: եղբայրասէր. ընկերասէր. եղբայրագութ:
–Աղբարը սպանօղ: եղբայրասպան. եղբայրազրաւ:
–Աղբօրը որդին: եղբօրորդի. եղբօրորդեակ:
–Աղբարը հօր կողմանէ: եղբայր իւր ոչ համամայր: – Աղբարը մօր կողմանէ: եղբայր իւր ոչ համահայր:
Աղբարութիւն. աղբար ըլլալը: եղբայրութիւն:
Աղբել, կամ ախպել: յապաւրահէ զոնց առնել. 'ի ձեռիչ երթալ. վճարել զպէտս մարմնոյ. Թափել զյաւելուած որովայնին. յաթոռն նստիլ 'ի պէտս: [հեղք:
–Աղբելը: զաւ 'ի վայր խողխողանք. ապարահեղք:
Աղբոտ: աղբուտ. աղբաւոր. աղբալի:
–Աղբոտ ջուր: կոյաջուր:
Աղբուր. փունար. սու կէօզի: աղբիւր. աղբերակն. ջրբուղխ. ջրաբուղխ:
Աղբուրիկ. գիւզէլ աղբուր. փունարձըգ: աղբերակ:
–Աղբրի ակ: ակն աղբեր. ակն ջրոյ. աղբերակն. ատենք ջրոյ: – Աղբրի ակեր: աղբերակունք: – Աղբրի լիւլէ: ծորակ:
–Աղբրի նման: աղբերանման. աղբերակերպ. աղբերատեսակ:
–Աղբրի պէս: աղբերաբար. աղբիւրօրէն. եբրև զաղբիւր: տես և Աղբրի նման:
–Աղբրի պէս վազել: աղբերանալ. աղբիւրաբար բղխել. աղբերաբար հոսիլ:
–Աղբրի պէս վազցնել. աղբուր ընել: աղբերացուցանել. աղբիւրս խաղացուցանել. աղբերաբար բղխեցուցանել. եբրև զաղբիւր հոսեցուցանել:
–Աղբրի պէս վազօղ: աղբերահոս:
–Արունը աղբրի պէս կը վազէր: արիւնն գունդագունդ արտաքս հոսէր. հեղեղք արեան գնային:
Աղբրգիր. գարտաշլըգ: եղբայրագիր. եղբայրակից:
–Աղբրգիր ըլլալ: գրիլ յեղբայրութիւն. լինել յեղբայրագիրս: տես և Աղբար ըլլալ:
–Աղբրգիր ըլլալը: եղբայրակցութիւն:
–Աղբրգիր ընել: եղբայրագիր առնել. գրել զոք յեղբայրութիւն. եղբայրագրել: տես և Աղբար ընել:
–Աղբրգիրներու տեղ: եղբայրանոց:
Աղբօր տղայ: եղբօրորդի. եղբօրորդեակ:
Աղեաց կապ. կոյուն պաղը: աղեկապ. փոշտակապ:
Աղել. թուզլամագ: աղել. յաղել. աղ արկանել. աղիւ համեմել. աղծել. ապխտել. աղաղել. յաղաղ դնել. յաղոց դնել:
Աղեղ. նէփ նէփէլու գործիք: աղեղն. լայնալիճ:
–Աղեղ ամուր, կամ խաւլի: հաստաձիգ աղեղն. պնդաձիգ աղեղն:
–Աղեղ ձիգ քաշած: գրկալիր աղեղն. լիագիրկ, լիաձիգ կամ պնդաքարշ աղեղն:
–Աղեղ մեծ, կամ եայմանը: լայնալիճ. լայնալիճ աղեղն:
–Աղեղ նետել: տես Աղեղը քաշել:
–Աղեղ նետելու վարպետ: տես Վարպետ աղեղնաւոր:
–Աղեղ շինօղ: աղեղնագործ:
–Աղեղ ունօղ, կամ նետօղ: տես Աղեղնաւոր:
–Աղեղը քաշել, կամ աղեղ նետել: քարշել զաղեղն. լարել զաղեղն. ձգել զաղեղն. աղեղնաւորել:
–Աղեղը ամուր, կամ ձիգ քաշել, (որ գրեթէ քաշօղը աղեղին մէջը կը մտնէ): լի քարշել պինդ զաղեղն. ընդ աղեղն մտանել. լարել և քարշել զաղեղն. պինդ ձգել զաղեղն. ընդ աղեղն մտանել. ընդ գիրկս մտանել:
–Ձիգ քաշել աղեղը: լնուլ զաղեղն. գրկապինդ ընդ աղեղն մտանել:
–Աղեղը ամուր, կամ ձիգ քաշօղ: լիաձիգ. հաստաձիգ. լիագիրկ:
–Աղեղի պէս: աղեղնանման. աղեղնակերպ. աղեղնատեսակ:
Աղեղ. թառ ըալըճը գործիք: կնտնտոց. հարիչ: [ղեղն:
Աղեղ. բամպուկ ատըճը գործիք. հալլաճ եայը: ա-
Աղեղնաւոր, կամ աղեղւոր. աղեղ ունօղ, կամ աղեղ բանեցնօղ: աղեղնաւոր. նետաձիգ:
Աղէկ (անուն:) լաւ. բարի. բարիոք. բարւոք. ազնիւ. ազնուական. պատուական. քաջ. ընտիր. ընտրական. փորձ. առատ. աջող. աջողակ:
–Աղէկ վարպետութիւն, կամ աղէկ ֆէնն: ճարտարարուեստ, կամ ճարտար հնարք:
–խիստ Աղէկ. խէյլի էյի: լաւագոյն. ազնուագոյն. ազնուականագոյն. ընտրելագոյն. պատուականագոյն. քաջագոյն. ամենալաւ. ամենաբարի. բարելաւ. քաջալաւ:
–Աղէկ. Էյի: բարւոք. բարիոք. լաւաբար. լաւ. քաջ. ճարտար:
–Աղէկ գիտէին: քաջ կամ ճարտար գիտէին:
Աղէկ: ուժգին. ուժգնակի. սաստիկ. պինդ. կարի. կուռ:
–Աղէկ մը կոփեցընել: ուժգին հարկանել:
–Աղէկ մը լալ: սաստիկ իմն յարտասուս հարկանիլ:
–Աղէկ բռնել: պինդ ունել:
–Աղէկ մը սիլահլանմիշ ըլլալ, կամ աղէկ զարնել: կուռ վառիլ. կուռ հարկանել:
Աղէկ: արժանապէս. ըստ արժանեաց. ըստ արժանի. 'ի դէպ. 'ի ճահ: [բողել:
–Աղէկ գովասանք տալ: արժանապէս ներ-
–Աղէկ հախէն գալ: ըստ արժանեաց պատժել. պատուհասել զնա ըստ արժանի:
–Աղէկ ըռաստ կու գար բանը: պատահմունքն 'ի դէպ ելանէին:

-Աղէկ գայթնել: 'ի ճահ պատահեցուցանել:
-խիստ Աղէկ. Ճէյ հաւանական: յոյժ բարւոք. կարի յիրաւունս. կարի իսկ քաջ. այո. ա_մենևին: [յոյժ կարես:
-Կրնաս ու խիստ աղէկ կրնաս: կարես և
-Աղէկ ըսեր: ազնիւ ասացեր:
-Աղէկ ազգէ: լաւազգի. տես և Մեծ ազգէ:
-Աղէկ անուն հանել: բարեհամբաւել. բա_րեհռչակել: [համբաւ:
-Աղէկ անուն ունեցող: բարեանուն. բարե_
-Աղէկ անուն ունենալը: բարեհամբաւութի:
-Աղէկ աղէկ: քաջ քաջ. բարի բարի:
-Աղէկ առողջութիւն, կամ տէնձութիւն: քաջողջութիւն:
-Աղէկ ատեն. ուղղորդ ատէն: ժամ բարեպա_տեհ. բարեժամ: տես և Դիպուկ ատեն:
-Աղէկ բաժնող, կամ բաժնած: բարեբաշխ. արդարաբաշխ:
-Աղէկ բնութիւն: բարեբարոյութիւն. լա_ւութիւն. լաւաբարութիւն:
-Աղէկ բնութիւն ունող, կամ աղէկ Թապիէ_Թի տէր: բարեբարոյ. լաւաբարոյ. բարե_բուն. բարեկիր. ազնուաբարոյ. բարեմոյն:
-Աղէկ բեռ շալկել: լաւաբեռնել:
-Աղէկ բոյս բուսցնող: քաջաբոյս. բարեբոյս. բարեբեր. բերրի. արգասաւոր. արգա_ւանդ. բեղնաւոր:
-Աղէկ բոյս բուսցնելը: բարեբերութիւն. պտղաբերութի. արգասաւորութիւն. բեղ_նաւորութիւն. բարեծնութիւն:
-Աղէկ գիտնալ: տես խիստ Տեղեակ ըլլալ:
-Աղէկ գիտցող: հմուտ: տես և Տեղեակ:
-Աղէկ բան գուշակող: բարենշան. բարե_գուշակ:
-Աղէկ դիրքով: բարեդիր. բարեձև:
-Աղէկ բան խնդրող: բարեհայց:
-Աղէկ բան հրամմող: բարեհրաման:
-Աղէկ բանի յորդորող: բարեհրաւէր. բարե_յորդոր:
-Աղէկ բանի հասած: բարեմասնեալ. բարե_մասին վիճակեալ:
-Աղէկ բանի հասնիլը: բարեմասնութիւն:
-Աղէկ բանի ետևէ ընկող: բարենախանձ:
-Աղէկ բանի ետևէ ըլլալով: բարենախանձեալ:
-Աղէկ զարդարած: բարեզարդ. գերազարդ. գեղեցկազարդ. վայելչազարդ:
-Աղէկ զարդարանք: բարեզարդութիւն. գե_րազարդութիւն:
-Աղէկ զարդարել: բարեզարդել. գերազար_դել. գեղեցկազարդ պճնել. վայելչազարդ յօրինել. պայծառազարդ հանդերձել. մե_ծապայծառ զարդարել:
-Աղէկ զէֆք, կամ սէֆայ: խրախունք. խրախճանութիւն. բարեկենդանութի. բա_րեկեցութիւն:
-Աղէկ զէֆք ընել, ուտել խմելով և այլն: կեալ 'ի զբօսանս. յօրանալ. բարեկեցիկ լինել. կշտապինդ վայելել:

-Աղէկ զաւակներու տէր ըլլալը: լաւամանկու_թիւն. բարեմանկութիւն. բարեորդիութի:
-Աղէկ ըլլալ. աղէկնալ. Էյի օլմագ: բարի լինել. լաւանալ. ազնուանալ. գեղեցկանալ. վայել_չանալ:
-Աղէկ ըլլալ. խոշաւ ըլլալ: 'ի լաւ անդր դիմել. յառաջադէմ լինել 'ի բարին: [կատարել:
-Աղէկ ընել. Էյի Իշլէմէք: քաջ գործել. քաջ
-Աղէկ ընել. աղէկցնել: բարի առնել. լաւացու_ցանել. ազնուացուցանել. կատարելագոր_
-Աղէկ ընող: կատարելագործ: [ծել:
-Աղէկ Թռչող: քաջաթռիչ. բարձրաթռիչ. սրաթռիչ. թեթևաթռիչ:
-Աղէկ լուանալ, կամ աղէկ մը լուանալ ձեռ_քը: բռնալիր լուանալ զձեռս:
-Աղէկ խառնուածք ունեցող: բարեխառն:
-Աղէկ խառնուածք ունենալը: բարեխառ_նութիւն:
-Աղէկ խրատներ տուող: բարեխրատ:
-Աղէկ խրատուած: բարեկիրթ. բարեխրատ:
-Աղէկ խորհուրդ տուող: քաջախորհուրդ. քաջ խորհրդական:
-Աղէկ խօսիլ: քաջաբանել. ճարտարաբանել. ճարտար խօսիլ. բարւոք ճառել:
-Աղէկ խօսիլը, կամ աղէկ խօսք: քաջաբա_նութիւն. ճարտարախօսութիւն:
-Աղէկ խօսող: քաջախօս. լաւախօս. բարեա_սաց. բարեզրոյց. բարեխօս. քաջաբան. ճարտարախօս. ճարտարաբան:
-Աղէկ կարգ ունող, կամ աղէկ կարգաւո_րած: բարեկարգ. գեղեցկակարգ:
-Աղէկ կարգաւորել: բարեկարգել:
-Աղէկ կարգաւորութիւն: բարեկարգութի. յօրինուածութիւն: [ցիկ:
-Աղէկ կեանք վայելող: բարեկեաց. բարեկե_
-Աղէկ կեանք վայելելը: բարեկեցութիւն. բարեկենդանութիւն. բարեկրութիւն:
-Աղէկ կշռող: բարեկշիռ:
-Աղէկ կշռած: բարեկշիռ. արդարակշիռ:
-Աղէկ կշտանալ: կշտապինդ վայելել. ուտել ցյագ: տես և խիստ Կշտանալ:
-Աղէկ հանդըպիլ. լաւ ըստ գալ: 'ի դէպ ե_լանել. 'ի ճահ պատահիլ. յաջողել:
-Աղէկ հանդըպած: բարեդէպ. բարեհան_դէպ: [նմա:
-Աղէկ հանդըպեցաւ: դէպք 'ի բարի ելին
-Աղէկ համ ունեցող: բարեհամ:
-Աղէկ լուր բերող: բարեհրեշտակ:
-Աղէկ հասկընալ: քաջ 'ի միտ առնուլ. խե_լամուտ լինել:
-Աղէկ հասկըցող: միտառու. լաւիմաց. խելա_մուտ. միտավարժ. քաջատու. ուշիմ:
-Աղէկ կերպ ունեցող: բարեձև:
-Աղէկ կերպ ունենալը: բարեձևութիւն:
-Աղէկը հասկըցընող: բարեծանոյց. բարեզե_կոյց: [չիւն:
-Աղէկ ձայն հանող: բարեհնչակ. բարեհնչա_
-Աղէկ ճանչցող: քաջածանօթ. հմուտ:

–Աղէկ մասը: բարեմասն:
–Աղէկ մտունդ ունեցող: բարեմտունդ:
–Աղէկ ճամբայ բռնող: բարեշաւիղ:
–Աղէկ մարդ: այր լաւ. լաւաբարոյ. առաքինի. ընտիր:
–Աղէկ մարդ ըլլալ. հօշամէտի կէլմէք: բարեմարդիկ լինել. շնորհուկս առնել. առ շնորհուկս խօսիլ. մարդկլուզել: տես և Երեսպաշտութեամբ խօսիլ:
–Աղէկ մարդիկ: լաւորեար:
–Աղէկ մաքով: բարեմտաբար:
–Աղէկ մը. պէք էյիձէ: քաջ. քաջ իսկ. կարի իմն: տես և Աղէկ. Դէջ:
–Աղէկ մտածող: բարեխոհ. բարեխորհուրդ:
–Աղէկը մտածել: բարեխորհել:
–Աղէկ նայուածք ունող: լաւակն. լաւահայեաց. բարեհայեաց. քաղցրահայեաց:
–Աղէկ յարմար: բարեյարմար. բարեպատեհ:
–Աղէկ յիշատակ ձգող: բարեյիշատակ:
–Աղէկ անունով յիշուիլ: բարեյիշատակիլ:
–Աղէկ յոյս ունեցող: բարեյոյս:
–Աղէկ յոյս ունենալը: բարեյուսութիւն:
–Աղէկ շունչ ձգող: բարեստուեր:
–Աղէկ նայող, կամ աղէկ կեօզճի: քաջադէտ. քաջատեսուչ:
–Աղէկ շինող: ճարտարագործ:
–Աղէկ պահած. իյի պէսլէնմիշ: քաջասուն. քաջասնունդ. բարեսուն. բարեսնունդ:
–Աղէկ պահել. իյի պէսլէմէք էթմէք: բարուցք, կամ քաջ սնուցանել:
–Աղէկ պահել: տես Ամուր պահել:
–Աղէկ պահելը, կամ պէսլէմիշ ընելը: քաջասնութիւն:
–Աղէկ պատմել: քաջ պատմել. ստուգապատում, մանրապատում առնել: տես և Աղէկ խօսիլ:
–Աղէկ պէտ ընող: բարեխնամ. բարեխնամող:
–Աղէկ սիրահրամիշ ըլլալ: տես Փիւր սիրահ ըլլալ:
–Աղէկ սիրահը: տես Փիւր սիրահ:
–Աղէկ սորվիլ. էյի էօյրէնմէք: քաջ ուսանիլ. ճարտար գիտել. ներհուն գոլ. ներկուռ գոլ. ներհմտանալ. ներակրթիլ. խելամտիլ:
–Աղէկ սորվիլը: քաջուսութիւն. ներհմտութիւն. ներվարժութիւն:
–Աղէկ սորվող, կամ աղէկ սորված: քաջուս. քաջավարժ. մտավարժ. հմուտ. կիրթ. խելամուտ:
–Աղէկ վարք ունող: բարեկրօն:
–Աղէկ վարք ունենալը: բարեկրօնութիւն:
–Աղէկ տեղաւորել: յարմարադրել:
–Աղէկ տեսնող: քաջատես. կորովաբիբ. սրակն:
–Աղէկ չտեսնող: չարատես. վատթարատես:
–Աղէկ տեսք ունող: տես Գեղեցիկ:
–Աղէկ փնտռտել. էյի մը թէֆթիշ էթմէք: յոյզ և խնդիր առնել. մանրախոյզ առնել. խիլ արկեալ որոնել. հետազօտել:
–Աղէկ փնտռտող: մանրախոյզ. հետազօտ:
–Աղէկ փորձել: քաջ փորձել. քաջ զփորձ առնուլ:

–Աղէկ քալող: բարեգնաց:
–Աղէկնալ: տես Աղէկ ըլլալ, և Առողջանալ:
–Աղէկները: բարի բարին. ընտիր ընտիրքն:
–քան զմեզ Աղէկները: յաւերժահարսունք. յաւերժական հարսունք. քաջք:
Աղէկութիւն. լուտուֆ. էյիլիք: բարութիւն. լաւութիւն. ազնուութիւն. քաջութիւն. արութիւն. ազնուականութիւն. վայելչութիւն. բարիք:
–Աղէկութիւն. խայըրսէվէրլիք. էյիլիք: բարութիւն. բարերարութիւն. երախտիք. երախտաւորութիւն. բարիք. շնորհք. պարգեւք. օճան:
–Աղէկութիւններով լիք ըլլալը: բարելըութիւն:
–Աղէկութիւն ընել: բարերարել. երախտիս առնել. բարեգործել:
–Աղէկութիւն ընող: բարերար. երախտաւոր. երախտապարգեւ. երախտագործ. բարեգործ. բարեացապարտ:
–Աղէկութիւն ճանչնալ, կամ գիտնալ. էյիլիք պիլմէք: ճանաչել զերախտիս, կամ զշնորհս:
–Աղէկութիւն ճանչցող, կամ գիտցող. էյիլիք պիլէն: շնորհակալու. շնորհապարտ. երախտաւոր. երախտահատոյց:
–Աղէկութիւն չճանչնալ } տես Ապերախտ ըլ-
–Աղէկութիւնը մոռնալ } լալ:
–Մէկու մը աղէկութիւնը չճանչնալ: ապաշնորհ լինել յումեքէ:
–Աղէկութիւն չճանչցող: տես Ապերախտ:
–Աղէկութիւն ուզող: լաւակամ. բարեսէր. բարեախորժ. բարեյօժար. բարեյորդոր:
–Աղէկութիւն ուզելը: լաւակամութիւն. բարեսիրութիւն. բարեհաճութիւն. բարեյօժարութիւն:
–Աղէկութիւն չուզող: բարեատեաց:
–Աղէկութիւն տեսնել: երախտիս ընդունել. երախտաւորիլ:
–Աղէկութիւն տեսնող: երախտառու. երախտագիտ. շնորհընկալ. շնորհակալու:
–Աղէկութեան արժանի: բարեացապարտ:
–Աղէկութեան վճարք, կամ մուգաֆէլէ: երախտահատոյցք:
–Աղէկութեան վճարք ընել: հատուցանել փոխանակ երախտեաց. առնել փոխարէն. առնել զդարձ փոխարինին:
–Աղէկութեան վճարք ընող: երախտահատոյց. շնորհակալու:
Աղէկուկ: բարեքիկ: տես և Գեղեցիկ:
–Աղէկուկ աչուի: տես Գեղեցիկ աչուի:
–Աղէկուկ երես: տես Գեղեցիկ երեսով:
–Աղէկուկ ըլլալ: տես Գեղեցիկ ըլլալ:
–Աղէկուկ ըլլալը: տես Գեղեցկութիւն:
–Աղէկուկ ընել: տես Գեղեցիկ ընել:
Աղէկցնել: տես Աղէկ ընել, և Առողջացնել:
Աղէկցնող: տես Առողջացնող:
Աղէկցթափուք: տես Ջրւանկութիւն:
Աղէկցեփուք } գօյաղ: տես Աղիքը կտրտելը:
Աղէկցխարշուք }
Աղէկցկտրտուք }

-Մէկ անգամ. մէյ անգամ մը: տես Մէկ հեղ մը:
-Մէկ անգամ մըն ալ: տես Մէկ մըն ալ:
-Մէկ անուն դնել. Երկուքին մէկ անուն տալ: հոմանունել:
-Մէկ անունով. Երկուքին մէկ անուն տալով: համանունաբար. համանունակի:
-Մէկ անուն ունեցող ուրիշի հետ: տես Անուանակից:
-Մէկ աչք ունեցող: միականի. միակն:
-Մէկ արուն, կամ մէկ արունէ. ինչպէս են աղբարները: արիւնակից. համարիւն. արեանատու:
-Մէկ բերան: միաբերան. միաբարբառ:
-Մէկ բերնէ. մէյ բերան ունեցող. ինչպէս է թուր, դանակ. և այլն: միասայրի. միողնի:
-Մէկ գաւառ բնակող: գաւառակից:
-Մէկ գունով. մէյ գոյն ունեցող: միագոյն:
-Մէկ գօտի կապող. փոխ գօտի: միագօտի. միագօտեալ:
-Մէկ դի. պիր թարաֆտա: 'ի մի կողմն. 'ի մի կոյս. մեկուսի. 'ի բաց. անդր:
-Մէկ դի կեցիր: 'ի բաց կաց: — Հէլէ սա առասպելները մէկ դի թողունք: բայց թողցուք զնա անդր զառասպելեալդ:
-Մէկ դի գնալ. մէյ դի էրթալ. մէյ դի փախչիլ: մեկնիլ. մեկուսանալ. ամփոփիլ. խուսափել. խուսել. խոյս տալ. խորշիլ. մերժիլ. բացակայել. ապարակայել. տեղի տալ. 'ի բաց մերժիլ, մեկնիլ, վճարիլ. թափիլ: — Քիչ մը անոնցմէ մէկ դի քաշուելով: սակաւիկ մի 'ի խոյս լեալ 'ի Նոցանէ:
-Մէկ դի գնալ կամ կենալ բանէ մը: պահել. ժուժկալել. հրաժարել. հատանիլ. զգուշանալ. պարկեշտանալ. կարճել զանձն. մեկնիլ. ուխտաւորիլ ('ի գինւոյ, 'ի կերակրոյ, 'ի մսոյ, 'ի կնոջէ. և այլն:) — Մէկ դի կենայ հարստութիւնը, մէկդի՝ ծառաներու բազմութիւնն ու դրսի պատիւը: ուր մնացեն ինչք, ուր մնացեն դերդաստանացն բազմութիւն և արտաքին պատիւքն:
-Մէկ դի գնալը, կամ մէկ դի երթալը: խուսափումն. խորշումն. տեղատուութիւն:
-Մէկ դի դնել: դնել 'ի մի կողմն. թողուլ 'ի մի կողմն. թողուլ անդր 'ի բաց:
-Մէկ դի ընել. մէյ դի դնել. մէյ դի թողուլ: մեկուսի, առանձին առնուլ. մերկանալ. անցուցանել: — Գեղեցկութիւնը վրայէդ մէկ դի ըրէ: անցո զշքեղութիւն 'ի մարմնոյ քումմէ: Մերկացիր 'ի քէն զշքեղութիւն:
-Մէկ դի կենալ: տես Մէկ դի գնալ:
-Մէկ դի տանիլ: տես Մէկ դի ընել:
-Մէկ դի քաշուիլ: տես Մէկ դի գնալ:
-Մէկ դին, կամ մէկ դիէն: 'ի միոյ կողմանէ. ըստ միոյ մասին. ըստ իմիք:
-Մէկ դին, կամ մէկ դիով. մէյ դի ունեցող. պիր թարաֆլը: միակողմանի:
-Մէկ դի մը. պիր եէրտէն: ուստեք:
-Մէկ դիէն մէկալ դին: կողմն 'ի կողմանէ. կողմանէ 'ի կողմն:
-Մէկ դիէն մէկալ դին անցնիլ: յայնկոյս անցանել:
-Մէկ դիէն մէկալ դին անցնիլ. ինչպէս լուսը ճամէն. և այլն: տես Թափանցել: — Մէկ դիէն մէկալ դին անցընել Նետը: թափ հանել զնետն. թափ անցուցանել: — Նիզակը մէկ դիէն մէկալ դին անցընելով պարապին մէկալ դին ձգեց: թափանցն զգեղարդն արարեալ ընկէց յայնկոյս պարապին: — Զրահին մէկ խաղէն մէկալ խաղը անցուց նետը: կարանէ 'ի կարան թափ հանեալ զնետն:
-Մէկ դին ընկած. կամ Մէկ դիուն վրայ: տես Քովու վրայ:
-Մէկ դին ընկնիլ, կամ Մէկ դիուն վրայ ընկնիլ: տես Քովու վրայ ընկնիլ:
-Մէկ դին ծռիլ, կամ հակիլ: միտել. հակամիտել. հակիլ. թեքիլ. խոնարհիլ:
-Մէկ դին ծռիլը, կամ հակիլը: միտումն. հակումն. հակամիտութիւն:
-Մէկ դին ծռող, կամ ծռած: միտեալ. հակեալ. միտ. հակամէտ:
-Մէկ դին յօժարիլ: հակամետել. յայս կամ յայն կողմն յօժարիլ:
-Մէկ դին յօժարող: հակամիտ. յօժար. յօժարեալ 'ի մի կողմն:
-Մէկ դին պահող: կողմնապահ:
-Մէկ դին սախտա, ճորք, չէնտանի. և այլն: միակողմանի:
-Մէկ երեսէ: պիր եիւզլիւ: միադիմի:
-Մէկ երկու. պիր իքի: երկու. ինչ:
Մէկ երկու չալը կը ժողվէր: քաղէր կրկուտս երկու. կամ խուիւս ինչ: տես և Մէկ քանի:
Մէկ երկու անգամ: միանգամ և երկիցս:
-Մէկ զմէկ. պիրի պիրինի: զմիմեանս. զիրեարս. այր զընկեր:
-Մէկզմէկ անցած. իրարու անցած. ղընձիլլմէ: աղխաղխեալ. ագուցիկ. շղթայաձև յօրինեալ. վերտեալ:
-Մէկզմէկ անցնել. իրարու անցնել: աղխաղխել. շղթայաձև յօրինել. ագուցանել. վերտել:
-Մէկզմէկ անցնիլ. իրար անցնիլ: խառնվիլ. շփոթել. խանգար 'ի մէջ արկանել. ընդ միմեանս արկանել. մրրկել ընդ միմեանս: — Քսութեամբ Նախարարները իրար անցուց: բանսարկութեամբ զնախարարս էարկ ընդ միմեանս: — Ծառերը իրար անցուց: զծառս ընդ իրեարս շփոթեաց:
-Մէկզմէկ անցնիլ: շուրթափել զմիմեամբք. ընդ հակառակս ընթանալ:
-Մէկզմէկ զարնել: տես Իրար զարնել:
-Մէկզմէկ յաղթել. մէյ մէյէ յաղթուած ըլլալ: յաղթել միմեանց. ելանել զմիմեամբք. ելևելս առնել զմիմեամբք կամ զիրերօք:
-Մէկզմէկ սիրող: միմեանցասէր:
-Մէկզմէկ տեսնելու գալ: գալ (Նոցա) 'ի միաբանութիւն տեսութեան կամ յայց իրերաց:
-Մէկզմէկէ: 'ի միմեանց. յիրերաց. այր յընկերէ:

—Մէկզմէկէ աւելի։ միքան զմի. այր քան զըն-կեր։ — Մէկզմէկէ աւելի կը ջանային մեր երկրին աւրելու։ այր զարամբ ելանէին աւ-րել աշխարհիս։ — Մէկզմէկէ աւելի կը ջա-նան քու կամքդ շուտ մը ընելու։ մի զմիով ելեալ՝ փութով կատարեն զկամս ձեր։

—Մէկ զմէկու. պիրի պիրինէ։ միմեանց. իրե-րաց. ցմիմեանս. ցիրեարս. այր ցընկեր։

—Մէկ զմէկու դէմ։ դէմ ընդ դէմ. դէմ յան-դիման։ տես և Դիմադէմ։

—Մէկ զմէկու դպչիլ։ տես Իրար զարնուիլ։

—Մէկ զմէկու ետևէ։ մի զկնի միոյ. մի ըստ միոջէ. զհետ միմեանց. զկնի միմեանց. զկնի իրերաց. զիրերաց զկնի. զմիմեանց կնի. տո-ղանի. միահետ. 'ի մի շար. կուռ զմիմեանց կնի։ — Կերակուրները մէկ զմէկու ետևէ կու գային։ Ճաշք զճաշս մղէին։ — Թշուառու-թիւնները մէկ զմէկու ետևէ կու գային։ վիշտք 'ի վշտաց հասանէին։

—Մէկ զմէկու հետ դառնալ։ զուգադարձիլ։

—Մէկ զմէկու հետ ընկնիլ։ ընդհարկանիլ. գժտիլ. կագիլ. կռուիլ։ — Թէ որ մէկզմէկու հետ ընկնին։ եթէ ընդ միմեանս խնչ աղմկի-ցին։ տես և Հետը ընկնիլ։

—Մէկ զմէկու հետ խառնել. Իրար խառնել։ խառնել 'ի միմեանս. զուգախառնել. ընդ-խառնել։

—Մէկ զմէկու հետ խառնուիլ։ խառնիլ ընդ միմեանս. ընդխառնիլ. զուգախառնիլ։

—Մէկ զմէկու հետ կապել։ շաղկապել. յօդել. զօդել։ տես և Կցել։

—Մէկ զմէկու հետ կապուիլ։ շաղկապիլ. յօ-դակապիլ. յօդաւորիլ յօդիլ. միաւորիլ. միանալ։

—Մէկ զմէկու հետ հիւսած, կամ մանած։ շարահիւսակ. շարամանեալ։

—Մէկ զմէկու հետ հիւսել, կամ մանել։ շա-րահիւսել. շարամանել. յօդել։ տես Կցել։

—Մէկ զմէկու միս ուտել։ զմիմեանս խածա-տել. դատափետել, կամ դատափետ առնել զիրեարս։ տես և Բամբասել, և Կռուիլ։

—Մէկ զմէկու մօտիկ, կամ Մէկ զմէկու քով։ տես Քովէքով։

—Մէկ զմէկու նման։ համանման. համակերպ. համաձև. հանգունակից։ տես և Նմանման։

—Մէկ զմէկու պլլուիլ. պէլ պէլէ գըրէնէ։ գիրկս արկանել միմեանց. զմիմեամբք փարիլ. գիրկ-ընդխառն լինել. գրկախառնիլ. գիրկ ընդ գիրկ խառնիլ. ողջագուրել զմիմեանս։

—Մէկ զմէկու պլլուիլը, կամ մէկ զմէկ գրկե-լը։ գրկախառնութիւն։

—Մէկ զմէկու պլլուող, կամ մէկ զմէկ գրկող։ գրկախառն, գիրկ ընդ գիրկ։

—Մէկ զմէկու վրայ։ զմիմեամբք. մի զմիով։

—Մէկ զմէկու վրայ դիզուած։ զմիմեամբք դի-զացեալ. շեղջակուտեալ. խռնեալ։

—Մէկ զմէկու վրայ դիզուիլ։ զմիմեամբք դի-զանիլ. շեղջակուտիլ. խռնիլ։

—Մէկ զմէկու վրայ դնել, կամ դիզել։ բար-դել. շեղջակուտել։

—Մէկ զմէկու վրայ յարձակելու ատեն։ 'ի խառնել երկոցունց կողմանց. 'ի խառնուրդս ճակատուց։

—Մէկ ըլլալ։ միանալ. միաւորիլ. միաբանիլ. տես և Կցիլ։

—Մէկ ըլլալը։ միութիւն. միաւորութիւն. միեղինութիւն. միանականութիւն. միա-բանութիւն։

—Մէկ ընել։ միաւորել. միացուցանել. միա-բանել։ տես և Կցել։

—Մէկ ընող. միացնող։ միացուցիչ։

—Մէկ լաթ մը միայն հագած։ միաձորձ. միա-հանդերձ. մեկնահանդերձ։

—Մէկ լեզու գիտցող, կամ մէկ լեզու խօսող։ միալեզու. միաբարբառ։

—Մէկ խալիպ, կամ մէկ խալիպէ. պիր գալըպ-դան չըգմըշ։ նոյնատիպ. համատիպ. հանգու-նատիպ. նմանատիպ։ տես և Մէկ կերպ։

—Մէկ խօսքով։ միով բանիւ. 'ի մի բան. միան-գամայն. համառօտ ասել. համայն ասել. բովանդակ ասացեալ. պարզաբար ասել։ — Ամմէնը մէկ խօսքով ըսեմ։ միանգամայն ա-սացից։

—Մէկ ծծով. մէկ ծիծ ունող. պիր մէմէլի։ միաստա-նի. միաստնին։

—Մէկ կարգ անցնել։ տես Մէկ շարք անցնել։

—Մէկ կեղևով։ միակեղև։

—Մէկ կերպ. պիր պիչիմ։ միակերպ. միա-տեսակ. միօրինակ. միաձև. միազգի. միազգե-մի. նոյնակերպ. նոյնատեսակ. նոյնատիպ. նոյնաձև. համակերպ. համատեսակ. համա-տիպ. համաձև. համազգի։

—Մէկ կնիկ ունող։ միակնի։

—Մէկ կտորէ. թէքփարչէ։։ միապաղաղ. միա-տարր. միաձոյլ. միամասնեայ. միադոյ։

—Մէկ կտորէ հագուստ։ անկար. փորանկեալ. թանկուզի. անկարանի. առանց կարանի։

—Մէկ համրանքով. մէկ համրանք ունող։ միաթիւ. միահամար. համաթիւ։ [զոյգ։

—Մէկ համրանքով. (Մէյ)։ եզակականապէս. ե-

—Մէկ հատիկ։ տես Մէկիկ։

—Մէկ հեղ։ տես Մէկ հեղ մը։

—Մէկ հեղ մը. մէկ անգամ մը։ մի անգամ. առ անգամ մի. զամ մի. 'ի միում նուագի. առ մի նուագ. զառաջինն։ [բերան զի։

—Մէկ հեղ մը. մէկ ատեն մը։ երբեմն. էր եր-

—Մէկ հեղ մըն ալ։ տես Մէկ մըն ալ։

—Մէկ հեղ մը ուտող։ միաճաշակ։

—Մէկ հեղէն։ տես Մէկէն. մէկէն 'ի մէկ։

—Մէկ հեղէն 'ի զատ։ բայց 'ի միոյ նուագէ։

—Մէկ հետէ։ միահետ. զուգահետ. նոյն հե-տայն. ընոյն հետայն։ տ. Մէկէն. մէկէն 'ի մէկ։

—Մէկ հոգի։ տես Մէկ սիրտ։

—Մէկ հօրէ ծնած. մէկ հօր որդի։ համահայր. համհօրեայ։

—Մէկ ձեռնէ. մէկ ձեռք ունող։ միաձեռանի։

-Մէկ ձև ։ միաձև․ նոյնաձև․ համաձև ։ տես և Մէկ կերպ ։ [եղաձի ։

-Մէկ ձիով․ պէկ չի ատող ։ միաձի․ մեկնակաձի․

-Մէկ ղաթ՝ փատ ։ միայարկ ։

-Մէկ ղաթ, կամ Մէկ ղաթէն․ եալըն ղաթ ։ տես Մէկ տակ ։

-Մէկ ղանատլը․ պէկ բիռ ատող ։ միաթև ։

-Մէկ մարմին․ պէկ վուճուտ պիլուր ։ մարմնակից․ համամարմին ։

-Մէկ մարմնոյ անդամ եղած ։ անդամակից ։

Մէկ մէկ․ պիրէր պիրէր ։ մի մի․ մէն մի․ մի առ մի․ միըստմիոջէ ։

-Մէկ մէկու ։ միմեանց․ իրերաց ։

-Մէկ մէկու դէմ նիզակներով կեցեր էին ։ ընդ միմեանս դէմ կային նիզակօք ։

-Մէկ մէկու տակ․ պէկ պէկու նէրթին ։ միընդմիով․ ընդ միմեամբք․ ընդ իրերօք․ 'ի ներքոյ միմեանց, կամ իրերաց․ այր ընդ ընկերաւ ։

Մէկ մը․ պիրիսի ։ մի ոմն․ մի ոք․ ոմն․ ոք․ մին ։

-Մէկէ մը․ պիրիսինտէն ։ յումեքէ․ յումեմնէ ։

-Մէկի մը․ պիրիսինէ ։ միում․ ումեք․ ումեմն ։

-Մէկի մը գին ըլլալ․ պէկի սը դին լուժու ։ յարիլ․ կուսակցիլ․ կուսակից լինել ։ -Մէկի մը տեղ անցնիլ ։ տես Յաջորդել ։

-Մէկ մը․ պիր քէրէ ։ տես Մէկ հեղ մը ։

-Մէկ մը չունող ։ տես Անտէր ։

-Մէկ մըն ալ․ հեղ մըն ալ․ պէկ անգամ մըն ալ ։ մի անգամ ևս․ դարձեալ․ վերստին․ անդրէն․ կրկին․ միւսանգամ․ միւս ևս․ այլ ևս․ և ևս․ ևս ։

-Մէկ մըն ալ չընես ։ մի ևս արասցես ։

-Մէկ մըն ալ բաժնել ։ անդրէն բաժանել․ ստորաբաժանել ։

-Մէկ մըն ալ գրել․ պիր փաճա եաղմագ ։ միւսանգամ գրել․ կրկնագրել․ երկրորդել զգիրն ։

-Մէկ մըն ալ դառնալ․ պիր փաճա փէճմէք ։ անդրէն դառնալ․ վերադառնալ․ վերադարձիլ ։

-Մէկ մըն ալ դառնալը ։ վերադարձ ։

-Մէկ մըն ալ ընել․ պիր փաճա էթմէք ։ յաւելուլ․ երկրորդել ։

-Մէկ մըն ալ ըսել ։ զնոյն բանիւք դալ․ կրկնաբանել․ երկրորդել զբանն ։

-Մէկ մըն ալ ըսելը ։ կրկնաբանութիւն․ երկրորդումն բանից ։

-Մէկ մըն ալ ծնանիլ․ պիր փաճա փօղմագ ։ վերստին ծնանիլ․ վերածնանիլ ։

-Մէկ մըն ալ ստեղծել․ պիր փաճա եարաթմագ ։ վերաստեղծել՝ նորաստեղծել ։

-Մէկ մօրէ ծնած․ պէկ մօր ուրդի․ համամայր․ համամօրեայ ։

-Մէկ նշանակող ։ եղակի ։

-Մէկ նշան ունող, կամ Մէկ բան նշանակող ։ համանշան․ նոյնանշան ։

-Մէկ շարք անցընել․ պէկ խարգ անցընել․ պիր սըրայա կէթիրմէք ։ 'ի մի շար դասել․ տողել․ շարադասել․ շարակարգել․ շարայարել ։ տես և Մէկ տեղ դնել ։

-Մէկ շարք անցուցած ։ համակարգ․ համադաս ։

-Մէկ պահէկէն․ ճիղլի ամրրայ ։ վայրկեան մի՛ և․ փոքր միւս ևս՛ և ։

-Մէկ պահէկէն կու գամ ։ վայրկեան մի՛ և եկից ։

-Մէկ պահէկէն կու տամ ։ վայրկեան մի ևս՛ և տաց ։

-Մէկ պահէկէն կը տեսնես ։ փոքր միւս ևս՛ և տեսցես ։

-Մէկ պէօլիւկ, կամ Մէկ սիւրիւ․ պիր պէօլիւք ։ համագունդ․ համախումբ․ համագումար․ համերամ․ համաժողով․ միագունդ․ միախումբ․ միաժողով ։

-Մէկ սեղան ունող․ պէկ թէղ ատող ։ սեղանակից․ ճաշակից․ հացակից ։

-Մէկ սիրտ․ պէկ հոգի․ պէկ պէկու ասլիւ եղող ։ միասիրտ․ միաշունչ․ միակամ․ միահաւան․ միախոհ․ միախորհուրդ․ համաշունչ․ համամիտ․ համակամ․ համախոհ․ միակարիք․ համակարիք․ համախորհուրդ ։ տես Միաբան ։

-Մէկ սիրտ ըլլալ ։ համաձայնիլ․ միաձայնիլ․ միաբանիլ․ ոգեխառնիլ ։

-Մէկ սիրտ ըլլալը ։ տես Միաբանութիւն ։

-Մէկ սոյ․ Մէկ սոյէ ։ տես Մէկ կերպ․ և Ազգակից ։

-Մէկ վանկ ունող ։ եղավանկ․ միամանակ ։

-Մէկ տակ․ պէկ ղաթ․ եալընգաթ ։ պարզ․ միատակ․ մեկնակ․ մեկին․ առանց խաւոյ ։

-Մէկ տարուան, կամ մէկ տարեկ․ պէկ տարին եղած, կամ պէկ տարի դիմացող ։ տարեկան․ տարևոր ։

Մէկ տեղ ։ 'ի միում տեղւոջ․ 'ի մի տեղի․ 'ի մի վայր․ ամփոփ ։

-Մէկ տեղ․ (ՊԷՅ․) պիրլէ․ պիրլէխինճէ․ պարապար ։ 'ի միասին․ միահետ․ զուգահետ․ միագունդ․ համագունդ․ խառն․ համայն․ զուգաց․ զուգընթաց․ զոյգ․ կից․ ընդ ։ - Ձայնին հետ մէկ տեղ ։ զոյգ ընդ ձայնին, կամ զուգընթաց ձայնին ։ - Անոր հետ մէկ տեղ կանչեցին ։ աղաղակեցին կից նմին ։ - Հօրը հետ մէկ տեղ չեկաւ ։ ոչ եկն ընդ հօր իւրում ։ - Անանկներուն վրայ լանք, թէ մէկտեղ և թէ առանձին ։ զայնպիսեան լացցուք, և առանձինն և հասարակ ամենեքին ։ - Թուրքերնին մէկ տեղ վեր վերցունելով ։ կից 'ի վեր առեալ զսակուրսն ։ - Իրեն հետ մէկ տեղ աշխարքս ալ կռուի անզգամներուն դէմ ։ պատերազմեսցի խառն ընդ նմա և աշխարհս առ անզգամս ։

-Մէկ տեղ աթոռ նստիլ ։ աթոռակցիլ․ գահակցիլ․ աթոռակից կամ գահակից լինել ։

-Մէկ տեղ աթոռ նստիլը ։ աթոռակցութիւն․ գահակցութիւն ։

-Մէկ տեղ աթոռ նստող ։ աթոռակից․ գահակից․ բարձակից ։

-Մէկ տեղ աղաչող ։ աղաչակից․ աղերսակից ։

-Մէկ տեղ աշխատող ։ աշխատակից․ վաստակակից․ ճգնակից․ ճգնողակից ։

–Մէկ տեղ աշկերտութիւն ընող, կամ մէկ տեղ վարպետ գնացող։ աշակերտակից։

–Մէկ տեղ ապրիլ։ կենակցիլ. կենցաղակցիլ. կենաց կցորդ կամ կենակից լինել։ տես և Մէկ տեղ կենալ։

–Մէկ տեղ ապրիլը։ կենակցութիւն. կենցաղակցութիւն։

–Մէկ տեղ ապրող. պիր եէրտէ եաշայան։ միասնունդ. համասնունդ. կենակից. կենցաղակից. կենահաղորդ. կենաց կցորդ։

–Մէկ տեղ առուտուր ընող. օրթագ։ վաճառակից. շահակից։

–Մէկ տեղ արծող։ արօտակից. ճարակակից։

–Մէկ տեղ բերել։ տես Ժողվել, և Մէկ տեղ ժողվել։

–Մէկ տեղ բնակիլ. Մէկ տեղ բնակող։ տես Մէկ տեղ կենալ. Մէկ տեղ կեցող։

–Մէկ տեղ բուսնող, կամ բուսած։ միաբոյս. բուսակից. տնկակից։

–Մէկ տեղ գալ։ տես Ժողվուիլ։

–Մէկ տեղ գիտնալ։ գիտակից կամ գիտակակից գոլ. գիտակցիլ։

–Մէկ տեղ գիտցող։ գիտակից. գիտակակից։

–Մէկ տեղ գնալ. Մէկ տեղ գնացող։ տես Մէկ տեղ երթալ. Մէկ տեղ երթող։

–Մէկ տեղ դաշ գնող. տէփփաշ։ դաշնակից. դաշնաւոր։

–Մէկ տեղ դնել։ դնել 'ի միասին. կարգել 'ի մի. զուգադրել. բաղադրել. զուգակցել. համադասել. համակարգել։ –Մարդուս մարմինը չորս տարերքէ մէկտեղ դրուած է։ մարդոյ մարմինն 'ի չորից տարերց խառնեալ է։

–Մէկ տեղ դնելը, կամ դրուիլը։ բաղադրութիւն. զուգադրութիւն։

–Մէկ տեղ դնող, կամ դրած։ տես Մէկ շարք անցուցած։

–Մէկ տեղ երգել։ երգակից լինել. երգակցիլ. ձայնակցիլ. համաձայնիլ. կցորդել երգոց։ –Ուրիշներն ալ մէկ տեղ կերգէին։ և այլքն զկնի կցէին։

–Մէկ տեղ երգող։ երգակից. զուգերգող. ձայնակից։

–Մէկ տեղ երթալ. Պիր եէր ճամբայ էրլօլ։ ուղեկցիլ. ճանապարհակցիլ. ճանապարհակից կամ ուղեկից լինել։

–Մէկ տեղ երթող. Պիր եէր գնացող։ ընթացակից. համընթաց. զուգընթաց. զուգահետ. միահետ։ տես և Ցօլտաշ. ճամբու. ն. այլն։

–Մէկ տեղ ընտրած։ ընտրելակից։

–Մէկ տեղ թագաւորող։ թագակից. թագաւորակից։

–Մէկ տեղ թաղուած։ թաղակից։

–Մէկ տեղ ժողված. Տօփ էղած։ ամփոփ. համագումար. համախումբ. միահամուռ. միախուռն. համագունդ։ –Բոլոր բազմութիւնը մէկ տեղ։ խումբ արարեալ ամենայն բազմութեամբ։ –Բոլոր բանակը մէկտեղ ժողվել։ համագունդ 'ի միոջ վայրի դիպել. ընդ մի տեղի դրգել։ –Բոլոր հայերը մէկտեղ ժողվուած գտաւ։ եգիտ կազմ և հաւաք զհայս։

–Մէկ տեղ ժողվել. Պիր եէրէ Բէրէլ. Տօփ էթմէք։ ամփոփել. համախմբել. համահաւաքել։ տես և Ժողվել։

–Մէկ տեղ ժողվուիլ։ խումբ առնուլ. խումբ առնել. համագունդ 'ի մի տեղի դրգել. համահաւաքիլ. համախմբիլ. եղանել։ տես և Ժողվուիլ։

–Մէկ տեղ խաղցող։ խաղակից։

–Մէկ տեղ խորհուրդ ընող։ խորհրդակից. համախոհ։ տես և Խորհրդակից։

–Մէկ տեղ խօսիլ, կամ խօրաթել։ խօսակից լինել. խօսակցիլ. զրուցատրել. երես ընդ երես խօսել. բերան 'ի բերան խօսել։

–Մէկ տեղ խօսիլը։ խօսակցութիւն. զրուցատրութիւն։

–Մէկ տեղ խօսող. կամ խօրաթող։ խօսակից։

–Մէկ տեղ ծնած։ համածին։

–Մէկ տեղ կապուած։ կապակից. կապանակից. գերեկից. բանտակից։

–Մէկ տեղ կարդացող։ ընթերցակից։

–Մէկ տեղ կենալ. Պիր եէր Բոլնիլ։ կալ 'ի միասին. բնակիլ 'ի միասին. բնակակից լինել. բնակակցիլ։ տես և Մէկ տեղ ապրիլ։

–Մէկ տեղ կենալը. Պիր եէր Բոլնիլը։ բնակակցութիւն։

–Մէկ տեղ կեցող։ բնակակից. յարկակից. համաբնակ. միաբնակեաց. միակրօն։ տես և Մէկ տեղ ապրող։

–Մէկ տեղ համրել. [illegible]։ թուակցել. զուգաթուել. համաթուել։

–Մէկ տեղ համրուած. Պիր հէսապէ գէչ էօլան. հասրանքին մէջ։ թուակից. զուգաթիւ. զուգահամար։ տես և Մէկ համրանքով. մէկ համրանք առնող։

–Մէկ տեղ համրուիլը։ թուակցութիւն։

–Մէկ տեղ ձայն հանել։ ձայնակից լինել. ձայնակցիլ. համաձայնիլ։

–Մէկ տեղ ձայն հանելը։ ձայնակցութիւն։

–Մէկ տեղ ձայն հանող։ համաձայն. միաձայն. համաբարբառ. ձայնակից. միաբարբառ։

–Մէկ տեղ ճամբայ երթալ։ տես Մէկ տեղ երթալ։

–Մէկ տեղ մեծցած, կամ սնած։ սնընդակից. համասնունդ. դայեկորդի. սանուխտ։

–Մէկ տեղ մեռնիլ։ մահակից լինել։

–Մէկ տեղ մեռնող։ մահակից։

–Մէկ տեղ մը։ ուրեք. ուրեմն. 'ի տեղւոջ ուրեմն։

–Մէկ տեղէ մը. Պիր եէրտէն մը։ ուստեք։

–Մէկ տեղէ մը չէ, կամ հիչ մէկ տեղէ մը։ ոչ ուստեք։

–Մէկ տեղ նայող։ զուգատես։ –Աչուըներուն մէկտեղ կամ հաւասար տեսութիւնը։ զուգատեսութիւն աչաց։

–Մէկ տեղ չլինել։ մեզ և ձեզ հասարակ չլինել։

–Մէկ տեղ որսացող։ որսակից։

-Մէկ տեղ ուխտելը։ ուխտակցութիւն։
-Մէկ տեղ ուխտող։ ուխտակից։
-Մէկ տեղ ուտել։ սեղանակից, հացակից, ճաշակից լինել. հաղորդել ընդ ումեք հացին. 'ի միասին աղ եւ հաց ուտել։ — Աւազակները մէկ տեղ կերակուր կերած ատեննին՝ իրենց բնութիւնը կը մոռնան։ աւազակք յորժամ ընդ միմեանս աղ առնուն, մոռանան զբարս։
-Մէկ տեղ ուրախանալ։ ուրախակից լինել. խնդակից լինել։
-Մէկ տեղ ուրախանալը։ ուրախակցութիւն. խնդակցութիւն։
-Մէկ տեղ ուրախացող. ուրախութեան ընկեր։ ուրախակից. խնդակից։
-Մէկ տեղ չարչարուիլ, կամ խաչուիլ։ չարչարակից լինել. խաչակից լինել. չարչարակցիլ. խաչակցիլ։
-Մէկ տեղ չարչարուիլը, կամ խաչուիլը։ չարչարակցութիւն. խաչակցութիւն։
-Մէկ տեղ չարչարուող, կամ խաչուող։ չարչարակից. խաչակից։
-Մէկ տեղ պառկիլը։ անկողնակցութիւն։
-Մէկ տեղ պառկող։ անկողնակից։
-Մէկ տեղ պատժըւած. Պիր պուծի Ներսէս էղըղ։ պատժակից։
-Մէկ տեղ պատմել։ ճառակցել։
-Մէկ տեղ պատմող։ ճառակից։
-Մէկ տեղ պար բռնել։ պարակից լինել. պարակցիլ. զուգապարել։
-Մէկ տեղ պար բռնելը։ պարակցութիւն. զուգապարութիւն։ [պար։
-Մէկ տեղ պար բռնող։ պարակից. զուգա-
-Մէկ տեղ պսակած։ պսակակից։
-Մէկ տեղ բառաչելով։ միաբառաչ։
-Մէկ տեղ ջանացող։ ջանակից. ճգնակից. ճգնողակից։ [ստեղծ։
-Մէկ տեղ ստեղծած։ ստեղծակից. համա-
-Մէկ տեղ ստեղծող։ արարչակից։
-Մէկ տեղ վազող։ ընթացակից. արշաւակից։ տես եւ Մէկ տեղ երթող։
-Մէկ տեղ տնկած։ տնկակից։
-Մէկ տեղ տնկուիլ։ տնկակից լինել։
-Մէկ տեղ տնկուիլը։ տնկակցութիւն։
-Մէկ տեղ տօնած։ տօնակից։
-Մէկ տեղ տօնել։ համախմբել զտօն. զուգատօնել։
-Մէկ տեղ փառաւորած։ փառաւորակից. փառաբանակից։
-Մէկ տեղ փառաւորող կամ փառաբանող։ փառաբանակից. բարեբանակից։
-Մէկ տեղ քալել, կամ վազել։ ընթացակից լինել։
-Մէկ տեղ քալելը, կամ վազելը։ ընթացակցութիւն. զուգընթացութիւն։
-Մէկ տեղ քալող։ զուգընթաց. ընթացակից։ տես եւ Մէկ տեղ երթող։
-Մէկ տեղ օծած։ օծակից։
-Մէկ տեղաց մէկալ տեղ տանիլ։ տես Ուրիշ տեղ տանիլ։
-Մէկ տեղացմը։ տես Մէկ տեղէ մը։
-Մէկտեղել։ տես Ժողվել։
-Մէկ տուն կենալ։ տես Մէկ տեղ կենալ։
-Մէկ տուն կեցող. Պիր էվտէ փալ բնակող։ տես Մէկ տեղ կեցող։
-Մէկ փերթէ. Պիր ձարէ։ միափերթ.
-Մէկ քաղքէ. Պիր թաղտի Պիզ բնակող։ քաղաքակից։
-Մէկ քաղքի մէջ բնակիլ։ քաղաքակցիլ. քաղաքակից լինել։
-Մէկ քան զմէկ. պիրի պիրինտէն։ մի քան զմի. այլ քան զընկեր։
-Մէկ քանի. պիր գաչ։ քանի մի. քանի ինչ։
-Մէկ քանի մարդիկ։ ոմանք։ տ. Պաղըսինները։
-Մէկ քանի օր։ աւուրք ինչ. զաւուրս քանի մի։
-Մէկ քանի օր առաջ։ յառաջ քան զաւուրս ինչ. յառաջ քան զայսօրիկ աւուրս։
-Մէկ քանի օրէն ետեւ։ յետ աւուրց. զկնի աւուրց ինչ. իբրեւ աւուրք ինչ 'ի վերայ անցին։ [բուն։
-Մէկ քէզքէ։ համարմաա. միաբուն. համա-
-Մէկ օրուան։ տես Օրուան մը։
Մէկալ, կամ մէկալը. օպիւրիւ։ միւս. միւսն։
-Մէկալընկը. օպիւրլէրի։ միւսք. այլք. կէսք։
Մէկալ գին։ տես Անգի գին։
-Մէկալ գին անցնող. չօք պահալը։ տես Զափն անցնող։
-Մէկալ վաղը։ տես Վաղը չէ մէկալ օր։
-Մէկալ օր, կամ մէկալ օրը։ տես Երեկ չէ մէկալ օր։ [նորդ։
Մէկերորդ. պիրինճի։ առաջներորդ. առաջ-
Մէկէն. (բացառական անուն)։ 'ի միոյ անտի. 'ի միոջէ անտի։
-Մէկէն. Պիրտէն 'ի Պէյ. Պէյ հէմէ. (Տանիշմ։) միահաղոյն. միանգամայն. համանգամայն. առհասարակ. առհաւասար. միաբան. միահամուռ. համայն. համերամ. հասարակ։
-Մէկէն 'ի մէկ. պիրտէն պիրէ։ անդէն. առժամայն. առ ետեղ. առ ոտս. անդէն եւ անդիսկոյն. անդէն վաղվաղակի. նոյնհետայն։
-Մէկէն ծագող։ համածագող։
Մէկեր։ տես Մէյեր։
Մէկիկ. Պէկ հափէ։ միակ. միաւոր. եզակի. եզական. անզուգական. գերաշխարհիկ. անհամեմատ։ տես եւ Գերազանց։
-Մէկիկ զաւակ ըլլալը։ միածնութիւն։
-Մէկիկ զաւկի մայր։ միածնամայր։
-Մէկիկը հօրը մօրը։ միածին։ տես եւ Հօրը մէկիկը։
-Մէկիկ մէկիկ։ տես Մէկ մէկ. եւ Տեղն 'ի տեղը։
Մէհէնկ. թաշ է, որով արծաթ կամ ոսկի կը փորձեն։ սմպատակ։
-Մէհէնկի զարնել։ շփել ընդ սմպատակի։ — Ոսկիին տարբերութիւնը մէհէնկի զարնելով կը փորձենք։ զոսկւոյ զանազանութիւն

ընդ սմպատակի չփելով փորձեմք։

Մէհլէմ. մլհամ. խոցի վրայ դնելու դեղ։ սպեղանի. ամոքանի։

—Մէհլէմ դնել։ արկանել սպեղանիս. սպեղանել։ — Կակղցընող մէհլէմ դնել։ կակղանալիս իմն սպեղանեաց 'ի վերայ ածել։

Մէհկէմէ կամ մէքքէմէ։ պահանջարան։ տես և Դատաստանի տեղ։

—Մէհկէմէ քեաթիպի։ տես Նոտար։

Մէձլիս։ խնճոյք. ժողով. բազմութիւն։ տես և Ժողով։

—Մէձլիս՝ ընթրիքի կամ սուփէն խմելու։ խրախճան. խնճոյք. երախան։ տես և Ձիաֆէթ։

—Մէձլիս՝ խաղի, խնդուքի։ խնճոյք. հանդէս. խրախուռնք։

—Մէձլիսը դաս դաս բաժնել։ բազմականս բազմականս բաշխել։

Մէձլիսխանայ։ խրախճանարան. տաճար։ տես և Ժողովոյ տեղ։

Մէձլիսճի. մէճլիս նսթօղ։ ժողովական. բազմական. հանդիսական. կոչնական. բազմեալ։

Մէձլիստաշ։ խրախճանակից։

Մէմէ։ տես Ծիծ։

Մէմլէքէթ։ տես Գաւառ։

Մէյէր, կամ մէկէր. (հարցական)։ միթէ. եթէ. թէ. իցէ թէ. եթէ իցէ. արդեօք։

—Մէյէր խե՞նթ եմ։ միթէ յիմա՞ր իցեմ։

—Մէյէր կը հաւատա՞յ։ իցէ՞ թէ հաւատասցէ։

—Մէյէր կազանի՞։ եթէ իցէ ապրեսցի՞։

—Մէյէր չ։ մի թէ ո՞չ. եթէ ո՞չ. թէ ո՞չ. ապաքէն ո՞չ. արդեօք ո՞չ. ո՞չ։

—Մէյէր չկերա՞ւ մի։ միթէ ո՞չ եկեր։

—Մէյէր չէ՞ս գիտեր։ թէ ո՞չ գիտիցես. ապաքէն ո՞չ գիտիցես. արդեօք ո՞չ գիտիցես։

Մէյմար։ ճարտարապետ։

Մէյմարութիւն։ ճարտարապետութիւն։

—Մէյմարութիւն ընել։ ճարտարապետել։

Մէյվէ։ միրգ. պտուղ։

Մէյտան։ հրապարակ. ատեան. արձակավայր։

—Մէյտան՝ ուր ձիով կը վազէն, կամ ճիրիտ կը խաղան, կամ տանը նման ուրիշ բան մը կընեն։ ասպարէզ. տեսարան. կրկէս. թատրոն։

—Մէյտան բերել։ տես Մէջ բերել։

—Մէյտան ելլել. ճէնկճիի, կամ կռուող մարդու, որ կռուողներուն մը ընէ։ հանդիսանալ։ առաջինանալ. նահատակիլ. շահատակիլ. ասպարիզել. յասպարէզ ելանել. 'ի կրկէս մտանել. 'ի հանդէս մտանել. 'ի մէջ անցանել։

—Մէյտան ելլել՝ ուրիշ մարդու մը. օրենքն գալ։ 'ի մէջ անցանել. կալ 'ի միջի. 'ի միջի արձանանալ։

—Մէյտան չելլել։ տես Պահուրտիլ։

—Մէյտան ելլել. բանի մը, էշքեարէն ելլէլ։ տես Բանը ծակիլ։

—Մէյտան ելլող՝ կռուող, կամ ճէնկճի։ ախոյեան. նահատակ. շահատակ։

—Մէյտան հանել. ֆէյտան ընել։ տես Հնարել։

—Մէյտան հանել. պէյան ընել։ տես Դուրս հանել. մէյդան հանէլ։

—Մէյտան հանօղ. պէյան ընօղ։ տես Դուրս հանօղ։

—Մէյտան ձգել։ 'ի մէջ արկանել. առաջարկել։

—Մէյտան տէօյիւշիւ։ տ. Մէյտան օյունու։

—Մէյտան օյունու։ թատր. ըմբշամարտական հանդէս կամ տօն խաղուց։

—Մէյտանը դնել զինքը։ տես Ինքը զինքը մէյտանը դնել։

—Մէյտանը ըսել։ հրապարակաւ ասել. հրապարակախօս լինել։ տես և Տիւանը խօսիլ։

—Մէյտանը ժողվըւիլ։ հանդիսանալ. 'ի հանդէս գումարիլ. կացրդիլ։

—Մէյտանը կեզինմիշ եղօղ։ ասպարիզաճեմ։

—Մէյտանի մէջ։ հրապարակաւ. առաջի ամենեցուն։

—Մէյտանի մէջ չար խապար տալ։ հրապարակագոյժ առնել. 'ի հրապարակագոյժ արկանել։

—Մէյտանի մէջ չար խապար տըւօղ։ հրապարակագոյժ։

—Մէյտանլը։ տես Լայնարձակ։

Մէն։ տես Մինակ։

Մէնզիլ։ սուրհանդակ. քաջընթաց։

Մէնէւիշ. գոյն է։ մեղոյշ։

Մէնէքշէ. ծաղիկ է։ մանուշակ. մանիշակ։

Մէնթէշէ. քաղաք է։ Պամփիլիա։

Մէնկէնէ։ մամուլ։

—Մէնկէնէ։ ճմլօղ, և քերթօղ։ տես Թօմբուխ՝ ճմլօղ, և այլն։

Մէնճէնիկ. ծանր բան վեր հանելու կամ նետելու գործիք։ բաբան. մանգղիոն. կազմած. մեքենայ. խոյ. բաղխատր. մճնեհ։

—Մէնճէնիկ թօշը։ ռմբաքար. բաբանաքար. ռումբ։

Մէնշիւր, կամ Մէնշուր։ տես Գերադանց։

Մէնտիլ. խուըլաղուչի ասըր։ խոյր պարական. արտախուրակ դարսից։

Մէնֆ. քաղաք է։ Մեմփիս։

Մէշէ՝ ծառ, կամ փայտ։ կաղնի։

Մէշէլիք. մէշէ ծառեր, կամ ծառերուն տեղը։ կաղնաստան։

Մէշին։ տես Կաշի։

Մէչիտ։ մզկիթ։

Մէջ. իչ. իչի։ մէջ. միջոց։

—Մէջ, կամ մէջը. երկու մարդու կամ բանի արանքը. արայ. մաղէյն։ 'ի միջի. 'ի մէջ. ընդ մէջ. ընդ։ — Օր մը հա, օր մը չէ։ օր ընդ մէջ. միջօրեայ չերմն։ — Տարի մը հա, տարի մը չէ։ ամ ընդ մէջ։ — Մէջը երեսուն տարի անցաւ։ և որ 'ի միջի ամքն՝ լինին երեսուն։ — Ձեր մէջը։ 'ի միջի ձերում։ — Մեր մէջը։ ընդ իս և ընդ քեզ. 'ի մէջ մեր. 'ի միջի մերում։

—Մէջ, կամ մէջը. իչինէ. իչինտէ։ 'ի մէջ. ընդ մէջ. 'ի միջի. 'ի ներքս. 'ի. յ. — Մէջ ձգել։ 'ի մէջ արկանել։ — Մէջ ընկնիլ։ 'ի ներքս անկանիլ։ — Դրախտին մէջը։ 'ի դրախտի անդ։ — Հաւանին մէջ արտորեցին։ յանկանի հատեցին։ — Գործոցը մէջը։ 'ի գործս նորա։

-Մէջ առնել. Իչինէ ալմաք: պարփակել. պա-րունակել. պարագրել. պարուրել. բովան-դակել. փակել: տես և Սղմեցնել:
-Մէջ բերել. Մէջ փէր բէրէլ: յառաջ ածել. յառաջ բերել. 'ի մէջ բերել. 'ի մէջ առ-նուլ. 'ի մէջ ածել. 'ի մէջ մատուցանել. 'ի լոյս ածել. 'ի դէմս ածել. յանդիման առ-նել: տես և Դուրս հանել:
-Մէջ ընկած բան: միջարկութիւն. կրճիմն. խորոց. անջրպետ. միջոց: — Երկու ծովին մէջ ընկած ցամաքին տիրեց: Նուաճեաց ըզ-ցամաք միջոցաց երկուց ծովուցն:
-Մէջ ընկնիլ: 'ի մէջ անկանիլ. միջամխիլ. մի-ջամուխ լինել:
-Մէջ ընկնող: միջամուխ. միջամուտ:
-Մէջ մտնել. Էրկեա բանի ոբալըգը մփնէն, որ մէկ մէկէ ղափէ, կամ մէջ մփնելով մէկ մէկէ բօժնէլ. ոբալըմաք: ընդ մէջ մտանել. անջրպետել ընդ մէջ. խորոց ընդ մէջ անկանիլ. որոշել ընդ մէջ:
-Մէջ մտնել. միանձնութեան ընել: տես Միջնորդ ըլլալ: — Ողորմութիւնդ մէջ մտաւ ու փրր-կեց զանինք: ողորմութիւն քո անջրպետեաց և փրկեաց զնոսա:
-Մէջ մտնել՝ կռուողներուն՝ որ հաշտեցնէ: տես Խաղաղեցնել կռուողները:
-Մէջ մտնող. միանձն: տես Միջնորդ: [ընել:
-Մէջ մտցնել՝ որ բան մը հոգայ: տես Միջնորդ
-Մէջ տեղէն: 'ի միջոյ. ընդ մէջ:
-Մէջ տեղէն վերուցէք: բարձէք 'ի միջոյ:
-Մէջ տեղէն կտրել: ընդ մէջ հատանել. մի-ջել. երկատել:
-Մէջ տեղէն երկուք ըլլալ. Մէջ տեղէն եր-կուք ընել: տես Մէջքէն կտրիլ. Մէջքէն կտրել:
-Մէջ տեղէն կորսնցնել: 'ի միջոյ կորուսա-նել. ջնջել 'ի միջոյ. անհետ առնել. բառնալ 'ի միջոյ:
-Մէջ տեղէն վերնալ: բառնիլ 'ի միջոյ. պա-կասել 'ի միջոյ. անհետ լինել:
-Մէջ տեղէն վերցնել. օրթաթան գալտըրմաք: տես Մէջ տեղէն կորսնցնել:
-Մէջ տեղը. Մէջի փէղը. օրթայ փէղը. (անուն): մէջ. միջոց. միջակ. միջավայր. կենդրոն. միջակէտ:
-Անիւին մէջ տեղը: միջնանիւ. կունդն:
-Գետին մէջ տեղը: միջնաշէն:
-Երկնքին մէջ տեղը: երկնամիջակ. հասարա-կած երկնից: — Երկնքին մէջ տեղը հասա-ծին պէս՝ ցորեկ ու գիշեր հաւասար կ'ըլլէ: 'ի հասանել 'ի հասարակած երկնից՝ զհա-ւասարութիւն տուընջեան և գիշերոյ կա-տարէ:
-Երկնքին մէջ տեղը եղածը: միջերկնեայ:
-Երկրիս մէջ տեղը եղածը: միջերկրեայ:
-Ծովու մէջ տեղը կամ խորը: միջնածով:
-Կռնակին մէջ տեղը: Թիկնամէջ. միջնաթեկն. միջնողն:

-Հրապարակին մէջ տեղը: հրապարակամէջ:
-Քաղքին մէջ տեղը: քաղաքամէջ:
-Մէջ տեղը. օրթան. արասընը. (նախադր): 'ի մէջ. ընդ մէջ. ընդ: — Ծովուն ու ցամաքին մէջ տեղը կեցաւ: եկաց 'ի մէջ ծովու և ցա-մաքի: — Տաճարին ու սեղանին մէջ տեղը: ընդ մէջ տաճարին և սեղանոյն: — Երկնքին ու երկրիս մէջ տեղը կախուեցաւ: կախեցաւ ընդ երկնիւ և ընդ երկիր: տես և Մէջ:
-Մէջ տեղը բան ձգել: խորոց ընդ մէջ ար-կանել. կրճիմն արկանել. ընդ միջել. խա-փանել:
-Մէջ տեղը բերել: տես Մէջ բերել:
-Մէջ տեղը գալ: անցանել 'ի մէջ. գալ 'ի մէջ. կալ 'ի մէջ:
-Մէջ տեղը կենալը: միջակացութիւն:
-Մէջ տեղը կենալով: 'ի միջասահմանին կալով:
-Մէջ տեղը կռուող: միջնամարտիկ:
-Մէջէմէջ բաւղաձև շէնք: խալկիդոն:
-Մէջէն կամ միջէն: 'ի միջոյ: — Մէջէն անց-նիլ: անցանել ընդ մէջ. հատանել: — Գետին քովը՝ որ մեծ դաշտին մէջէն կանցնի: առ գետովն՝ որ հատանէ զդաշտն մեծ:
-Մէջէն մէկ քանին առնել, կամ ժողվել: ծաղկաքաղ առնել. հատընտիր լինել:
-Մէջը գնել: պահարանել. ամփոփել:
-Մէջը ըլլալ: Իչինտէ օլմաք: տես Հաղորդ ըլլալ:
-Մէջը մտնել: միջամուխ լինել. մխիլ: — Աստ-րեստանի մէջը մտան: միջամուխ եղեն յԱստ-րեստան: — Հրէաստան մտան: մխեցան 'ի Հրէաստան:
-Մէջը պարապ: սնամէջ: — Մէջը փորած ու պարապ եղէգ: ցողուն փոր և սնամէջ:
Մէջինը, կամ միջինը: միջին:
Մէջք. պէլ: մէջ. մէջք:
-Մէջքէն կտրած: միջակտուր. կիսակտուր. ընդ մէջ կտրեալ. երկատեալ. տրամատեալ:
-Մէջքէն կտրել. Մէջ+էն էրկեա+ ընէլ: ընդ մէջ կտրել. ընդ մէջ հատանել. միջակտուր կամ կիսակտուր առնել. երկատել. տրամատել: Ծերուն որդին մէջքէն կտրեց: միջակտուր արարեալ զորդի ալևորին:
-Մէջքէն կտրուիլ: միջակտուր լինել: — Անանկ սոսկալի բազկէն կտրուեցաւ մէջքէն: մի-ջակտուր յայնպիսի ահաւոր բազկէ լեալ:
-Մէջքէն ճղքել: հերձանել ընդ մէջ:
-Մէջքը ամուր: գօտէպինդ. քաջագօտի:
-Մէջքը ամուր կապել: պնդել զմէջս. գօտէ-պնդիլ. գօտևորիլ:
-Մէջքը գօտի ունող: գօտեւած. գօտևոր. գօտեպինդ:
-Մէջքը կապելիք. Մէջ+ը պաղէլէ+: միջապատ. սփածանելի:
-Մէջքը կոտրած: միջաբեկ. միջակոտոր. քա-մակաբեկ. քամակակոտոր:
-Մէջքը կոտրել: միջաբեկ առնել. միջաբեկել:
Մէռմէռ. գոր է: կիճ. մարմարիոն. մարմար:

-Մէռմէռէ, կամ Մէռմէռէ չինած : մարմա֊րակուռ. մարմարաշէն. կճեայ. կճեղէն. մարմարեայ :
-Մէռմէռի նման : մարմարաձև :
-Մէռմէռի վըրայ գրել : տես Քարի վըրայ գրել :
-Մէռմէռով պատած : մարմարապատ :
Մէսէլայ : զոր օրինակ. որպէս. որգոն. հե֊բար. օրինակ իմն :
Մէստ. ոտից հագնելիք : օղ :
Մէտէ. Ֆրկ : տես Սատամրքս :
Մէտէ. որքին ուղեղը : ախորժ. յօժարութի. կամք. իղձ :
-Մէտէի եարար : ախորժ. ախորժելի. ախոր֊ժական. ախորժակ. բաղձալի. սիրելի :
-Մէտէին ուղածը : տես Սրտին ուղածը :
Մէտրապօլիթ : տես Արքեպիսկոպոս :
Մէտրէ. կամ մէթրէ. Չըեղինոյ չափ : մար֊սափոր. չափ :
Մէտրէսէ : տես Դպրատուն :
Մէրամէթ : բեգեկ. նորոգութիւն :
-Մէրամէթ ընել : կազմել. կարկատել. զօրա֊ցուցանել (զբեգեկ). նորոգել :
Մէրագ : անգոհ. մղձուկք :
Մէրատ : տես Ժառանգութիւն :
Մէրասէէտի : } տես Ժառանգ :
Մէրասիմր : }
Մէրիճ. Իտալեայ. գետի անուն է : Սըրոս :
Մէրհամէթ : տես Ողորմածութիւն :
Մէրհամէթլի : տես Ողորմած :
Մէրհամէթսիզ : տես Անգութ :
Մէրճան. կարմիր քար է, որ ծովը կը բուսնի : բուստ :
Մէրճիմէկ : ոսպն :
-Մէրճիմէկի ապուր : ոսպնաթան. շիկաթան. ոսպնապատ :
Մէրսին, կամ } տես Մրտի ծառ :
Մէրսին աղաճը : }
Մէրսին ճուկը : մօրէ. մուռինէս. մեռինէս. թառափ :
Մէրտին. քաղաք է : Մամպուռ :
Մէրտիվէն : տես Սանդուղք. և զհետևեալն :
Մէվլուտ. փողոսք : ծնունդ :
-Մէվլուտ Թուլթմաք. Մէվլուտ Թութու֊ճու : տես Մարդու աստղը նայիլ. Մարդու աստղը նայող :
Մէւշ, կամ մէվճ. փաղչայ : տես Այծք :
Մէւշլէնմիշ ըլլալ՝ ծովը, կամ ջուրը : ծածանիլ. ծփիլ. վէտ վէտ ձօձել :
-Մէւշլէնմիշ ըլլալը՝ ծովու, կամ ջրի : ծածա֊նումն. վէտավէտք. ծփումն :
-Մէւշլէնտիրմիշ ընել՝ ծովը, կամ ջուրը : վէտս վէտս ձեմեցուցանել. մէտ 'ի մէտ ձօձեալ ձեմեցուցանել :
Մէւշլի, կամ մէվճլի : պաղպաջուն. փաղփա֊ղուն. փաղփիւնափայլ. փողփողենէջ :
Մէքեան : տես Խօնախ. և Բնակարան :
-Մէքեան բռնել : տես Խօնախ բռնել. և Խօն֊միշ ըլլալ :
Մէքէնայ : տես Մէնձէնիք :

Մէքկէմէ, կամ Մէհքէմէ : տես Դատաստա֊նի տեղ :
Մէքտուպ : տես Բարևագիր :
Մէօհտաճ. Մէօհտաճ ըլլալ. և այլն : տես Կարօտ. եհտաճ. Կարօտ ըլլալ. և այլն :
Մէօհիւր : տես Կնիք :
Մէօհլէթ : ժամ. պայման. համբեր : տես և Առեն. ժէհլէթ :
-Մէօհլէթ տուր ինծի : ժամ տուր ինձ :
-Իրեք օր մէօհլէթ տալ : տալ երից աւուրց ժամադրութիւն :
-Մէօհլէթը լմընալէն ետքը : յետ լնլոյ ե֊գեալ կէտին :
Մէօհրած. Ճէօհիւրլիւ : տես Կնքած. Ճէօհրլի
Մէօհրել : տես Կնքել. Ճէօհրէլ
Մը. ռիր : մի. իմն. ինչ. ոմն. ոք. ուրեք. ու֊րեմն : — Սատակ մը չաժեր : ոչ արժէ գանկ մի :
-Կտոր մը : մասն ինչ :
-Մարդ մը : այր ոմն. այր ոք :
-Գեղ մը : 'ի գեօղ ուրեմն :
-Տեղ մը եկանք : եկաք 'ի տեղի ուրեք :
Մըգթար. [illegible] : տես Չափ. [illegible] :
Մըղմըղ : տես Տնտնացող :
Մըղմըղալ. ուըլլամաք : կսկծել :
Մըղմըղալը : կսկիծ. մորմոք :
-Մըղմըղացնող : կսկծաբեր. կսկծագին. կըսկը֊ծալի. կսկծահար. կսկծելի. կսկծողական. կսկծեցուցիչ : [կիծ :
-խիստ Մըղմըղացնող : դառնակսկիծ. կսկծա֊
Մըթընալ. Մըթընցնել. և այլն : տես Մթնալ. Մթնցնել. և այլն :
Մըխ : տես Գամ. Էնփոէք :
Մըխլատըղ : տես Մագնիս :
Մըղրըպը երկիր : տես Աֆրիկեայ :
Մըցխիթ : տես Մցխիթ :
Մթապէս : տես Մութ մութ :
Մթացնել : տես Մթնցնել :
Մթխալ. ... : մթխալ. գրամակէս :
Մթկեկ, կամ մթնկեկ : աղօտ. աղօտաջահ. աղօտաճաճանչ. խաւարաբոյր. նուաղ. ըն֊տուերատեսակ. մթինակ :
Մթնել : տես զհետևեալն Մթնալ :
Մթնալ. գարարմաք : մթանալ. նսեմանալ. ա֊ղօտանալ. ստուերանալ. մթագնիլ. խաւա֊րիլ. նուաղիլ :
Երբեմն երբեմն կը մթնայ : ընդ ժամանակս ժամանակս 'ի խաւար դառնայ :
Մթնշաղ. գարամթրաք : աղօտ. մառայլ : տես և Մթկեկ : [և Մթնալ :
-Մթնշաղ ըլլալ : աղօտանալ. նուաղել : տես
Մթնշաղուն. (Դէբ) : նսեմաւ :
Մթնոլորտ. ամպախաղաց պարունակ. մըթ֊նոլորտ :
Մթնցած. խարարմըշ. գարարմըշ : մթագնեալ. խաւարեալ. նսեմացեալ. աղօտացեալ. ծմա֊կուցեալ. խաւարին. խաւարային. մթագին.

խաւարչուտ. նսեմաստուեր։ տես և Մութ. Մթայինն։
-Միտքը մթնցած։ խաւարամիտ։
Մթնցնել. խարարէթմէք։ մթացուցանել. խաւարեցուցանել. նսեմացուցանել. աղօտացուցանել. խաւարել. ստուերացուցանել. ծածկեցուցանել. ստուերատել. նուաղեցուցանել. ստուերածս առնել։
Մթնցնող. մաւի էէրօղ։ խաւարեցուցիչ. ծածկեցուցիչ. նսեմացուցիչ. մթացուցիչ։
-չՄթնցող։ անաղօտելի. անաղօտական. աննսեմանալի։ տես և Մթութիւն չունող։
Մթով. մրան. (ձէյ)։ տես Մութն 'ի մութը։
Մթութիւն. գարարթըլ. գարանլըգ։ մթութիւն. նսեմութիւն. մթագնութիւն. աղօտութիւն. աղջամուղջ. խաւար. տխրութիւն։ տես և Մութ. խաւար։
-Մթութիւն՝ երկնքի, կամ ամպերու։ ամպք թխպայորդք. բալաձիգք։
-Մթութիւն չունող։ անաղօտ. աննսեմ. անմռայլ. անշամանդաղ. անստուեր։
Մթուն. (ձէյ)։ տես Մութն 'ի մութը։
Մժեխ. մանփրփէլ մոծակ։ մժղիկ. մժիկ. մուն։
-Մժեխ. սիվրիսինէկ։ տես Մոծակ։
Մժղուկ. գէնա ճանճ։ մժղուկ։
Մի. պիր։ տես Մէկ. պիր. և Մը։
Մի. սագըն։ մի. մի՛ երբեք. մի՛ արգելք։
Միաբան. պիր իւրէքլի. պիր նիէթլիւ. ոէօլ ւէրի պիր։ միաբան. միախոհ. միախորհուրդ. միակամ. համակամ. համախոհ. համախորհուրդ. համամիտ. համաշունչ. համաձայն։
-Իրարու հետ միաբա՞ն էին թէ հակառակ։ հաւա՞նք ինչ ընդ միմեանս էին թէ հակառակք։
-Միաբան ըլլալ։ տես Միաբանիլ։
Միաբանեցնել. միւաֆագ էթմէք։ միաբանել. համաձայնել։
-Ջօրքը իրեն հետ միաբանեցնելով։ զզօրսն համակամս իւր արարեալ։
Միաբանիլ. միւաֆագ օլմագ։ միաբանիլ. գալ 'ի կամս ուրուք. համաձայնիլ. զուգաձայնիլ. ձայնակցիլ. միանալ. յարիլ. անկանիլ յոք։
-չՄիաբանիլ։ չմիաբանիլ. օտարանալ. գժտիլ. տարաձայնիլ. երկպառակիլ։
-Միաբանիլը։ տես Միաբանութիւն։
-չՄիաբանիլը։ անմիաբանութիւն. տարաձայնութիւն. օտարումն. գժտութիւն. հերձուած։
Միաբանութիւն. միւաֆագըլ։ միաբանութիւն. միակամութիւն. միախոհութիւն. համակամութիւն. համախոհութիւն. համաձայնութիւն։ տես և Միաբանք։ [ամբոխ։
-Միաբանութիւնը ներքև վրայ ընող։ միաբան-
Միաբանք. միւթթեֆագ ճէմաաթ։ միաբանք. միաբանակեացք. միաբանութիւն. ուխտ։
Միաբանող։ տես Միաբան։
-չՄիաբանող։ անմիաբան. տարաձայն. երկպառակ. բաժանական։

Միածին (որդի)։ պիրիճիկ. պիր փանէճիկ։ միածին. միամօր։
Միակերպ. պիր պիչիմլի։ միակերպ. համակերպ. միօրինակ. միաձև։ տես Մէկ կերպ։
-Միակերպ հագուած։ համահանդերձ։
-Միակերպ պայծառ, կամ փայլուն։ համապայծառ. զուգափայլ։
-Միակերպ տարածուած։ միատարած։
Միակտոր։ տես Մէկ կտորէ։
Միամիտ. պուրղալըգ. պէօն. խալիս։ միամիտ. պարզամիտ. պարզ. աննենգ. անխարդախ։
-Միամիտ ըլլալ։ միամտիլ. միամտանալ։
Միամտութիւն։ միամտութիւն. պարզամտութիւն. պարզութիւն. աննենգութիւն։
Միայն. տէք։ տես Լոկ. և Մինակ։
-Միայն ջրի մէջ, կամ միայն ցամաքի մէջ ապրող։ միակենցաղ։
-Միայն թէ, կամ միան թէ. անճագ։ միայն թէ. միայն զի. բայց միայն. բայց եթէ. բայց թէ. այլ միայն. բայց։ տես և Ամա։
Միանալ։ տես Մէկ ըլլալ։
-Որոնք որ անոր հետ միացած էին։ ամենեքեան որ ընդ նմա հաւանեալ էին, որ միաբանեալ էին ընդ նմա, որ համախոհք նորա էին։
Միանձն. Միանձն ըլլալ. և այլն։ տես Միջնորդ. Միջնորդ ըլլալ. և այլն։
Միաչէն. միւշքիւլ. մէկ ալէր նոր։ միականի. միակն։
Միաչէնութիւն։ միակնութիւն։
Միասիրտ։ տես Մէկ սիրտ։
Միատեղ։ տես Մէկ տեղ։
Միացած. պիր օլմուշ։ միացեալ. միաւորեալ։
Միացնել։
Միաւորել։ } տես Մէկ ընել։
Միաւ ընել. նաքալ եայն հանել։ նուալ։
Միգերգերէ. աղուէս փառանը, աղքիւլը. նէ-անդրառնիմ է։ միին գալ կամ բերել ընդ բերանն։
Միգիւթրա կամ ռիքօթթա։ վարձկան։
Միթէ. միւկէր։ միթէ. եթէ. թէ։ տես և Մէյէր. (հարցական)։
Միլ. ճաւրու թուլ։ մղոն. հազար քայլ։
-Միլ մը տեղի ութերորդ մասը։ ասպարէզ. հարիւր քսան և հինգ քայլ։
Միլ. օքեայէն անդընէլու լոքու, կամ մաքուր, կամ նէրքի. ն այլն։ առանցք. առնակ. սեան։
Միլայիմ։ տես Կակուղ. Թոյլ։
-Միլայիմ ըլլալ։ տես Թուլնալ. նէվլէքմէք։
-Միլայիմ ընել։ տես Կակղցնել. և Թուլցնել. նէվլէքլէթմէք։
Միլան, կամ մելան. թաղաքի անուն է։ Մեդիոլան։
Միլիոն. հազար անգամ հազար. տասը հէղ հարիւր հազար։ հազարք. հազարաց. հարիւր բիւր։
Միլիոնաւոր։ բիւրք բիւրուց։
Միլէթ։ տես Ազգ. ժողով։
Միլ սույու. Նիլի մօղարէս. գետ է։ Նեղոս։

Միզաճ. մըզաճ։ խառնուած. բնաւորութիւն. առողջութիւն. ողջոյն։
—Միզաճըդ ինչպէս է։ ողջո՞յն ես քեզ։
—Միզաճսըզ։ անառողջ. վատառողջ. հիւանդոտ։
—Միզաճսըզութիւն։ անառողջութիւն. վատառողջութիւն։
Մինակ. եալընըզ. թէք. (տես և մէջ։) միայն. միայնակ. մենաւոր. առանձին. սոսկ. լոկ. միայնիկ. եւեթ։
—Դուն ու ան մինակ։ միայն ընդ միայն։
—Մինակ դուն չես կրնար։ դու և եթ ոչ կարես։
—Թզին ծառին տերևները մինակ անիծեց։ զսաստս նզովից թզենւոյն տերևովն չափ առնէր։
—Կրային լաթովը մինակ խալըսիլ։ միաձորձ զերծանել։ — Մէկ փապուճովը խալըսիլ։ միամոյկ զերծանել։
—Մինակ ըլլալ. [illegible] ըլմալ. եալընըզ օլմաք։ մենանալ. միայնանալ. միանձնանալ. առանձնանալ։
—Մինակ իշխել։ միապետել. ինքնակալել. միահեծան տիրապետել։
—Մինակ իշխող։ միապետ. ինքնակալ.՞ միահեծան։
—Մինակ կենալ. եալընըզ տուրմաք։ կալ առանձին։ տես և Մինակ ըլլալ։
—Մինակ կենալը։ միայնակեցութիւն։
—Մինակ կեցող. մընաւ բեաւօղ։ մենակեաց. միայնակեաց. առանձնակեաց. միանձն։
—Մինակ ձիով ազատիլ։ միաձի ճողոպրիլ։
—Մինակ ձիով ձորով փախչիլ։ միաձի ճողոպրեալ մազապուր փախչիլ։
—Մինակ ճէնկ ելլել, կամ մինակ սիլահլանմիշ ըլլալ։ մենամարտիլ։
—Մինակ ճէնկ ընելը։ մենամարտութիւն։
—Մինակ ճէնկ ընող։ մենամարտ. մենամարտիկ. մենակռիւ։
Մինակութիւն. [illegible]։ միայնութիւն. միայնակեցութիւն. միանձնութիւն. առանձնութիւն։
Մինակուկ. մընաւըճըք։ միայնակ. միայնիկ։
—Կելլէր մինակուկ ու մունճ անոնց քովը կերթար։ յարուցեալ երթայր առ նոսա միայնիկ մնջիկ։ տես և Մինակ։
Մինասիպէթ։ տես Յարմարութիւն։
Մինասիպէթսիզ։ տես Անյարմար։
—Մինասիպէթսիզ լախըրտը։ տես Ափեղցփեղ խօսք։
—Մինասիպէթսիզ տեղը։ յանդէպս. անճահ։
Մինարէ։ մնիրայ. աշտարակ։
Մինաւոր. Մինաւոր ըլլալ. և այլն։ տես Մինակ. Մինակ ըլլալ. և այլն։
Մինաւորիկ։ տես Մինակուկ։
Մինաւորութիւն։ տես Մինակութիւն։
Մինէ. բանուածք։ կիտուած։
Մինէլի։ կիտուածով։ [քղամիթ։
Մինթան. ձըրայի նիշճ հագուստ։ տառատոկ.
Մինինայ, կամ մնինայ. ... ։ մնինայ. երևիլ։
Միննակ։ յիրաւի. արդար. արդարև։
Միննէթ, կամ միւննէթ։ երախտանք. երախտիք։
Մինչև։ տես Ինչվան։
—Մինչև որ։
—Մինչ որ։ } տես Ինչվան որ։
Մինտէր։ տապաստակ. ակումբ. բազմոց։
—Բուբլայ մինտէր։ փետրալից պաստառ։
Միշկէթ։ տես Միսկէթ։
Միշտ. փայմա։ միշտ. յար. ցանկ. ցանգ. յաւէտ. յաւէժ. յաւերժ. յարաժամ. հանապազ. հանապազօր. զօր հանապազ. յաւէժաբար. յաւերժաբար. անլռելի. անդուլ. անդադար. անհանգիստ. անխափան. անհատ. անընդհատ։
—Միշտ ախորժելի. յարախորժելի։
—Միշտ աղօթող։ մշտահայց. մշտամռունչ. մշտնջենամռունչ. յաւէժագոչ։
—Միշտ ապրող։ մշտնջենակեաց։
—Միշտ արթուն։ յարարթուն։
—Միշտ բարի։ մշտաբարի։
—Միշտ բաց, կամ բացող։ մշտաբաց. մշտաբացիկ. յարաբաց։
—Միշտ բերող։ մշտաբեր։
—Միշտ բխել։ յարաբղխել։
—Միշտ բխող։ մշտաբուղխ. մշտնջենաբուղխ. մշտախաղաց. մշտակայլակ. մշտահոս. յաւէտախաղաց. յարաբուղխ. յաւէժախաղաց. յաւէժագնաց. յաւերժաբուղխ. յաւերժախաղաց. հանապազաբուղխ։ տես և Միշտ վազող։
—Միշտ գիշեր կամ միշտ մութ։ մշտագիշեր։
—Միշտ գլորտկող։ մշտագլոր. մշտահոլով։
—Միշտ գնալ մէկ տեղ մը։ հանապազորդել ուրեք. ցանկորդել։
—Միշտ գնալը։ հանապազորդութիւն։
—Միշտ գոված։ մշտնջենագով։
—Միշտ գոց պահել զդուռը։ հանապազափակ ունել զդուռն։
—Միշտ գոցող, կամ գոցած։ մշտափակ. հանապազափակ։
—Միշտ դառնալ։ դարձադարձ առնել։
—Միշտ դատող։ մշտադատ։
—Միշտ դիմանալ։ տես Միշտ կենալ։
—Միշտ դիմացող։ տես Միշտ կեցող։
—Միշտ ետևէն երթալ։ յարահետևել։
—Միշտ եղած, կամ եղող։ մշտակեց. յարակեց։
—Միշտ երգել։ յարաձայնել։
—Միշտ երգող։ յարաձայն. անլռելի։
—Միշտ երերացող։ մշտատատան. մշտախաղաց. յարախաղաց. յարաճօճ. յարածուփ։
—Միշտ երկնցած կամ երկնցնող։ մշտակարկառ։
—Միշտ զարմանալի։ յաւերժահրաշ. յաւէտահրաշ։

—Միշտ զգուշաւոր։ հանապազազգոյշ։
—Միշտ ընել (բան մը)։ հանապազորդել. ցանկորդել. ոչ դադարել. առնել անդադար։ — Միշտ կ'աղօթէր։ հանապազորդէր յաղօթս։
—Միշտ ընծայօղ, կամ ընծայած։ մշտամատոյց. մշտանուէր։
—Միշտ թռչօղ։ հանապազաթռիչ. յարաթըռեալ։
—Միշտ ժամ ըսօղ։ յարապաշտօն։
—Միշտ լացօղ։ մշտարտասուր։
—Միշտ լուսաւոր։ մշտալոյս. մշտնջենալոյս. յարափայլ. մշտափայլ. մշտապայծառ. յաւէրժալոյս։
—Միշտ խաղող բերօղ։ մշտնջենաձիր։
—Միշտ խենթ։ յարամոլի։ [մուխ։
—Միշտ խօթօղ կամ խօթած։ հանապազա-
—Միշտ խօսօղ։ մշտախօս. հանապազախօս. մշտաբարբառ։
—Միշտ ծագօղ։ մշտածագ։
—Միշտ ծածուկ։ յարածածուկ։
—Միշտ ծաղկած։ մշտափթիթ. յարափթիթ. յաւէտափթիթ։
—Միշտ ծեծկուօղ, կամ լացօղ։ հանապազակոծ. յարակոծ։
—Միշտ ծլօղ։ մշտաբողբոջ։
—Միշտ ծնանօղ։ հանապազածին. մշտածին։
—Միշտ ծփօղ։ յարածուփ. յարակոծ։
—Միշտ կաթօղ։ մշտակաթ. մշտակայլակ։
—Միշտ կանանչ կամ դալար. հէչ չթառամօղ։ մշտադալար. յարադալար. մշտազուարճ. յարազուարճ. յաւէտազուարճ. մշտաաղարթ. մշտատերև. մշտնջենաձիւղ. յաւէտուղէշ. միշտ սաղարթացեալ։
—Միշտ կատարեալ կամ կատարօղ։ մշտակատար։
—Միշտ կենալ կամ դիմանալ. կանգնիլ։ մշտակայել. յարակայել. յարամնալ. յարատևել։
—Միշտ կենալը կամ դիմանալը։ մշտակայութիւն. յարակայութիւն. յարամնայութիւն. յարատևութիւն։
—Միշտ կեցնել։ յաւերժացուցանել. անմահացուցանել. յաւէտացուցանել։
—Միշտ կեցօղ կամ դիմացօղ. միշտ ապրօղ։ մշտակայ. յաւէրժական. յարագոյ. յարակայ. յարամնայ. մշտագոյ. յաւէրժակայ։ տես և Յաւիտենական։
—Միշտ կոխած, կամ կոխօղ։ մշտակոխ։
—Միշտ կոյս։ մշտակոյս. յարակոյս. մշտնջենակոյս. յաւէրժակոյս։
—Միշտ կռուօղ։ մշտամարտ. հանապազակռիւ։
—Միշտ կրօղ, կամ կրած։ մշտակիր. հանապազակիր։
—Միշտ հաստատուն։ անշարժ. մշտակառոյց։
—Միշտ հարուստ։ մշտահարուստ։
—Միշտ հիւանդ։ հանապազահիւանդ։
—Միշտ ճանչցուած։ մշտածան։
—Միշտ մեռնօղ։ հանապազամեռ։
—Միշտ մէկտեղ կեցօղ։ յաւետակից. յաւերժակից. մշտնջենակից. մշտնջենաւորակից։
—Միշտ մնալ։ տես Միշտ կենալ։
—Միշտ մորթուօղ։ մշտազեն։
—Միշտ մտածօղ։ մշտախոհ։
—Միշտ մտիկ։ յարամերձ։
—Միշտ յաղթօղ։ մշտայաղթ։
—Միշտ յիշուելու։ յարայիշելի. մշտայուշ յիշատակաց արժանի։
—Միշտ յիշօղ, կամ յիշուած։ մշտայուշ։
—Միշտ յօժար։ մշտայօժար։
—Միշտ նախատանք կրօղ։ յաւէտանախատ։
—Միշտ նայիլ։ մշտապիշ լինել։
—Միշտ նայօղ։ մշտակն։
—Միշտ նոյն կարգը պահօղ։ մշտնջենակարգ. անփոփոխ. անյեղլի։
—Միշտ նոր։ մշտանորոգ։
—Միշտ շահօղ։ մշտաշահ։
—Միշտ շարժիլ։ յարաշարժիլ։
—Միշտ շարժօղ։ մշտաշարժ. յարաշարժ։
—Միշտ շրջան ընօղ։ մշտահոլով. յարահոլով։
—Միշտ ուրախ։ մշտազուարճ. յարազուարճ. մշտազուարթ. յարազուարթ. յաւէտազուարթ։
—Միշտ չարչարօղ կամ չարչարուօղ։ մշտաչարչար. մշտատանջ. հանապազաչարչար։
—Միշտ պայծառ։ մշտապայծառ. մշտափայլ. յարափայլ։
—Միշտ պաշտելի։ մշտապաշտելի։
—Միշտ պէտս ընօղ։ յաւէտախնամ։
—Միշտ պտուղ տուօղ։ մշտապտուղ։
—Միշտ ջանացօղ։ մշտաջան. հանապազաջան. յարաջան։
—Միշտ սառած։ մշտասառոյց։
—Միշտ սխալօղ։ հանապազասխալ։
—Միշտ սուտ խօսօղ։ հանապազասուտ։
—Միշտ վազօղ՝ ջուր, [illegible], [illegible]. և այլն։ մշտահոս. մշտնջենահոս. մշտահոսան. մըշտաթոր. յաւէրժախաղաց. հանապազահոս. անհատահոս. մշտազեղ. մշտահեղ։ տես և Միշտ կաթօղ. Միշտ բխօղ։
—Միշտ վայելօղ կամ վայելած։ մշտավայել։
—Միշտ վառած։ մշտավառ. յաւէտավառ. յարաբորբոք. անշէջ. մշտալոյս. մշտնջենավառ։
—Միշտ տարածօղ, կամ տարածած։ մշտատարած. հանապազատարած. մշտածաւալ։
—Միշտ տեսնելու։ մշտատեսիլ. հանապազատես. մշտնջենատես։
—Միշտ տևել։ յարատևել. յարամնալ. յաւէժամնալ։ [տև։
—Միշտ տևօղ։ յարատև. յարատևակ. մշտա-
—Միշտ ցորեկ։ մշտատիւ. յարատիւ։
—Միշտ փափաքօղ։ մշտափափագ։
—Միշտ փոխուօղ։ յարափոխ. յարափոփոխ. հանապազափոխ։
—Միշտ փոփոխել։ յարափոփոխել։
—Միշտ քալօղ կամ գնացօղ։ հանապազագնաց. յարընթաց։

Միչօ: մանուկ. համբակ:

Միջակ. օրթա: միջակ. միջական. միջայրին. մի-ջակայրին. միջասահման: — Երկան ու կարճ վանկերուն միջակը: միջակ երկարացն և սը-ղից: — Կատարեալները, միջակները ու տը-կարները: կատարեալք, միջք և ակարք:

—Միջակ՝ [illegible] մէջ: տես Բարեխառն:

—Միջակ՝ ոչ խիստ [illegible] և ոչ խիստ [illegible]: տես Եղկ:

—Միջակ ծեր: միջածեր. ալեբեկ. ալեխառն. ալեծաղիկ: [սակաւ:

—Միջակ հասակ ունեցող: միջահասակ. չափ հա.

—Միջակ ձայն ունեցող: միջակաձայն:

Միջակէտ: միջակէտ. կենդրոն:

—Բոլորակին միջակէտը կամ կեդրոնը: 'ի խըր-թան բոլորակի:

—Աչխուքին միջակէտը: մէտ:

Միջամէջ. (Լէհ [illegible]) [illegible]: ժամ ընդ մէջ. ժամ ընդ ժամ. երբեմն երբեմն:

—Միջամէջ. (Լէհ [illegible].) [illegible]: մէջ ընդ մէջ. երբեք երբեք:

Միջատ: ճճի. միջախառն. միջատ: [ջոյ:

Միջէն. [illegible]: 'ի մի.

Միջի. [illegible]: միջին:

—Միջի բերդ: միջնաբերդ. դղեակ:

—Միջի դուռ. [illegible]: միջնադուռն:

—Միջի խալթ՝ [illegible]: միջնայարկ. միջնատուն:

—Միջի կէտ: տես Միջակէտ:

—Միջի ճամբայ: միջաշաւիղ. միջնաշաւիղ. ընդմիջաշաւիղ:

—Միջի մասը: տես Մաս բառին տակը:

—Միջի պատ: միջնորմ. միջնապարիսպ. միջ-նացանկ:

—Միջի տեղ: տես Մէջ տեղը. [illegible]:

—Միջի օդը: միջօդ. միջնօդ:

Միջինք. [illegible]: հասարակած. հասա-րակ: տես Կէս կամ կէսը:

—Միջինք մեծպաքին: հասարակ պահոց:

Միջնորդ. [illegible]: միջնորդ. սադին. սախթ. միջնեակ. պատգա-մաւոր. բարեխօս:

—Միջնորդ ըլլալ. [illegible]: միջնորդել. պատ-գամաւորել. լինել բարեխօս. բարեխօսել:

—Միջնորդ ընել. [illegible]: յաղերս ածել (զաւուրս առ Աստուած). բարեխօս ունել:

—Միջնորդութիւն: միջնորդութիւն. պատգա-մաւորութիւն. բարեխօսութիւն:

Առաքեալներուն միջնորդութեամբը: միջնոր-դաւ առաքելոց. միջնորդովք առաքելովք:

Օդին միջնորդութեամբը: միջնորդաւ օդոյ:

Միջոց. [illegible]: միջոց ժամանակի:

Ան միջոցին: յայնմ վայրի. մինչ այս մինչ այն. մինչդեռ նոքա յայնմ էին:

Պերսէոսի ան միջոցին ըրածը, եղածը: Պեր-սեայ յայսմ վայրի իրքն:

Պատերազմներուն մէջը միջոցներ եղան: դը-ատնին և միջոցք լեալ պատերազմաց:

Միջուկ. [illegible]: մէջ. միջուկ. ուղեղ. սիրտ. սրտուկ. ծուծ. սոթ կամ սօթ:

Միռաէ. քաղաք է: Զմիւռին. Զմիւռնիա:

Միս. [illegible]: միս. մարմին: — Թևին միսը ուտել: ուտել զմարմին բազկի իւրոյ:

—Մկան ձեռվ միս. [illegible]: խաղճմունք. կամ խողճմունք:

—Միս ծախելը: մսավաճառութիւն:

—Միս ծախող: մսավաճառ:

—Միս ծախողի խանութ: մսավաճառանոց. ապանդանոց:

—Միս ուտել: ուտել զմիս. մսակեր լինել. մսաճաշակ լինել:

—Միս չուտել: հրաժարել կամ հատանիլ 'ի մսոյ. պարկեշտանալ կամ կրճատել 'ի մսոյ. ժուժկալել կամ կարճել զանձն 'ի մսոյ:

—Միս ուտելը: մսակերութիւն:

—Միս չուտելը: մսահատութիւն:

—Միս ուտող: մսակեր. շաղղակեր. մարմնակեր:

—Միս չուտող: մսահատ:

—Մսէ: տես Մսեղէն:

—Մսի գին: մսագին:

—Մսի դէզ: մսադէզ:

—Մսի չէնկէլ. [illegible]: մսա-հան: [կեռ:

—Մսի չէնկէլ. [illegible]: ճանկ.

—Մսի ջուր: տես Խաշու:

—Մսի ճենճ. [illegible]: ճենճեր:

—Մսով պատատ: մարմնապատ:

—Մսոտ մասը: մսան:

Միսաֆիր: հիւր. օտար. օտարական. եկ-վոր:

—Միսաֆիր առող: հիւրատեաց. օտար-ատեաց. հիւրամերժ:

—Միսաֆիր ընդունիլ, կամ մեծարել: հիւ-ր ընկալել. օտարընկալել. ասպնջականել. օ-տարասիրել:

—Միսաֆիր ընդունիլը, կամ մեծարելը: հիւ-րընկալութիւն. հիւրամեծարութիւն. հիւ-րասիրութիւն. օտարասիրութիւն. ասպն-ջականութիւն:

—Միսաֆիր ընդունող, կամ մեծարող, կամ սիրող. [illegible]: հիւրընկալ. հիւրընկալու. օտարընկալ. օտարասէր. հիւ-րասէր. հիւրամեծար. ասպնջական. վա-նատուր:

—Միսաֆիր չընդունող: հիւրամերժ. օտար-մերժ. օտարահալած:

Միսաֆիրխանայ: հիւրանոց. հիւրատուն. օտարանոց. վանք:

Միսաֆիրութիւն: հիւրութիւն. հիւրոյթ. օտարութիւն:

Միսինայ. քաղաք է: Մեսինայ:

Միսիսթրայ, կամ Միսիթրայ. քաղաք է։ Լակեդեմոն. Սպարտա։
–Միսիսթրացի։ լակեդեմոնացի. սպարտացի։
Միսկ։ մուշկ. հրամուշկ։
–Միսկի հոտ ունող։ մշկահոտ։
–Միսկի համ ունեցող։ մշկահամ։
Միսկէթ գինի։ մշկահոտ կամ ծաղկահոտ գինի։
Միսկին. [illegible]։ տես Խեղճ։
Միսկճի. մոմ շինող։ խունկագործ. խունկեփեաց. խնկեփեաց։
Միտախայ. [illegible] է. ձկանականջ։
–Միտախայի կեղև. [illegible]։ խեցի. խեփոր։
Միտիլլի ձի։ բուշոյ. բաշոյ. պէշասպիկ։
Միտիլլի ատասը։ Միտիլլինէ. Լեսբոս։
–Միտիլլեցի։ միտիլլինեցի. լեսբացի։
Միտք. ոգի. [illegible]։ միտք. խելք. իմացութիւն. իմացականն։ տես և Խելք. Ցեղողութիւն։
–Միտք առնել։ տես Սերտել։
–Միտք բանեցնել։ տես Խելք բանեցնել։
–Միտք բերել, կամ Միտքը բերել։ 'ի միտ ածել. զմտաւ ածել. յուշ ածել. ուշ 'ի կուրծս անկանիլ. ուշ 'ի կուրծս առնել. ուշաբերել. մտաբերել. յիշել. յիշատակել. մտախոհ լինել։
Ոմանք երեք օրը մէյմը միտքերնին կը բերեն կերակուր ուտելը։ ոմանք յերիս աւուրս յուշ արկանեն կերակուրս։
Սոսկալի վերջին դատաստանը մտքերնին կը բերեն։ զհանդերձեալ սոսկալի դատաստանն յուշ բերիցեն։ — Միտքդ բեր։ յուշ։
–Միտքը արթնցնել։ քրքրել զմիտս։
–Միտք բերել. [illegible]։ տես Միտքը ձգել։
–Միտք դնել։ տես Խելք տալ։
–Միտք գնող. [illegible]։ տես Խելք տրւող։
–Միտք ընել։ տես Մտածել։
–Միտք ունող։ տես Խելք ունող։
–Միտք չունող։ տես Խելք չունող։
–Միտքը բաց։ տես Զգաստ. և Խելացի։
–Միտքը բոլորած։ տես Խելքը բոլորած։
–Միտքը գալ։ յուշ լինել։ տես Միտք բերել։
–Միտքերնիդ գան բանուողները։ յուշ լիցին ձեզ կապեալքն։
–Միտքը գոց։ տես Բութ. [illegible]։
–Միտքը գուլ. Միտքը բութ։ տես Բութ։
–Միտքը դարտակ. Միտքը պարապ։ տես Փուճ բան մտածող։
–Միտքը դնել. [illegible]։ դնել 'ի մտի. դէմ դնել. մտաբերել։ — Միտքը դրած զանիկայ սպաննել։ էարկ 'ի միտս սպանանել զնա։
Միտքը դրեր էր, որ Երուսաղէմ երթայ։ դէմ եդեալ էր նորա երթալ յԵրուսաղէմ։
–Միտքը կը դնէր ինքը զինքը խղդել։ 'ի խեղդ մտաբերէր։ տես և Դիտաւորութիւն դնել։
–Միտքը ըլլալ։ տես Միտքը պահել։
–Միտքը ընկնիլ։ ընդ միտս հարկանել. անկանել 'ի միտս. յուշ լինել։ տես Միտք բերել։
–Միտքը չընկած։ անկարծ. յեղակարծ. անակնկալ։
–Միտքը իմացող։ տես Սիրտը գիտցող։
–Միտքը ծածուկ։ ծածկամիտ։
–Միտքը ծուռ։ յետսամիտ. թիւրասիրտ։
–Միտքը կորսնցնել։ տես Խելքը կորսնցնել։
–Միտքը հաստատ։ անյողդողդ. յեցամիտ։
–Միտքը ձգել։ յիշեցուցանել. յուշ առնել. յուշ ածել։
–Միտքերնին կը ձգէ։ յուշ տայ առնել նոցա։
–Միտքը ձգող։ յիշեցուցիչ. յուշարար. ազդարար։
–Միտքը մաքուր։ յստակամիտ. մաքրամիտ. սրբամիտ. արդարամիտ։
–Միտքը մոլորած, կամ միտքը մոլորցնող, կամ խաբող։ մտամոլոր. մտախաբ։
–Միտքը շիտակ։ ուղղամիտ. ուղղասիրտ. ուղղախոհ. ուղղախորհուրդ. ուղիղհաւաճ. ողջախոհ. ողջամիտ։
–Միտքը չար։ տես Չար բան մտածող։
–Միտքը պահել։ ունել 'ի մտի. յուշի ունել։
–Միտքը սաղ։ տես Խելքը գլուխը։
–Միտքը սուր։ տես Սրամիտ։
–Միտքը վերնալ։ տես Յափշտակուիլ մտօք։
–Միտքը վրան ժողվել։ } զմիտսն կազմ՝ ունել.
–Միտքը վրան պահել։ } ամփոփ ունել զմիտս. ուշ ունել. միտ դնել։ տես Զգաստ կենալ։
–Միտքը տկար։ փոքրիմաց. տկարամիտ։ տես և Տկար մտօք։
–Միտքը ցրուել, կամ ցնդել։ զմիտս այլուր զբօսուցանել. այսր անդր զմիտս խարխափել. յողդողդել զմիտս. գայթ 'ի գայթ տատանել։ տես և Խելքը ցնդել։
Մտաց դէմ բան։ անտեղի. յիմարական։
–Մտաց մէջ շինած, կամ ծնած։ ներտորամադրեալ. ներտորամադրական։
–Մտաց տակ իյնել։ ընդ միտս հարկանիլ. հասանելի գոլ։
Աստուած չէ թէ միայն ձեռքի՝ այլ և մտաց տակ չիյնար։ Աստուած ոչ միայն 'ի ձեռաց չգնի, այլ և ոչ ընդ միտս ուրուք հարկանի։
–Մտաց տակ չընկնող. [illegible]։ անըմբռնելի. անիմանալի. անհասանելի. անբովանդակելի. անպարագրելի. անպարփակելի. անպարփիմանալի. անտեսանելի. անհաս. անհասական. անպարփակ. անպարագիր. անպարագիծ. անսահման. անամփոփ խորհրդոց։
–Մտքէն անցնիլ։ ելանել 'ի սիրտ ուրուք։ — Ինչու խորհուրդներ կանցնեն կոր մտքերնիդ։ ընդէ՞ր խորհուրդք ելանեն 'ի սիրտս ձեր։
–Մտքէն ելած։ տես Մոռցած։
–Մտքէն ելլել։ տես Մոռնալ։
–Մտքէն հանել։ տես Մոռցնել։

